ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

## ԶԵՆՈԲ ԳԼԱԿ ԱՍՈՐԻ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՏԱՐՕՆՈՅ

ԶՈՐ ԹԱՐԳՄԱՆԵԱՑ

## ԶԵՆՈԲ ԱՍՈՐԻ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1832 ՌՄՁԱ

# ԶԵԿՈՒՑՈՒՄՆ

ԶԵՆՈԲՍ այս աշակերտ սրբոյ Լուսաւորչին, և առաջնորդ Իննակնեան վանիցն 'ի նմանէ կացեալ, հրամանաւ վարդապետին իւրոյ՝ որպէս ինքն իսկ պատմէ՝ գրեաց զգիրս զայս առ երիցունս ոմանս յԱսորիս ։ Ուստի հաւաստի թուի՝ ասորերէն զսա գրեալ․ զի ինքն իսկ և առ որս գրէրն՝ ասորիք էին․ մանաւանդ զի և ասորի գրով վարէին յայնժամ մերք ։ Նա պատմէ 'ի սմա զերթ սրբոյ Լուսաւորչին 'ի Կեսարիա, և զձեռնադրել նորա 'ի Ղեւոնդեայ եպիսկոպոսէ, զփոխադրութիւն նշխարաց սրբոյ Կարապետին, և զիրաց ինչ պատերազմի՝ որ 'ի կողմանս Տարօնոյ գործեցան ։ Արդ զայն պատմութիւն նոյն ինքն ապա մատենագիրն և 'ի հայ բարբառ երեւի յեղեալ․ քանզի այսպէս 'ի գլուխ գրոցս դրոշմեն գրչագիրք․ Պատմութիւն Տարօնոյ, զոր թարգմանեաց Զենոբ Ասորի ։ Բայց եթէ զթարգմանեալն ոք փոխանակ պատմագրելոյ առցէ, և համարիցի զսա հայերէն գրեալ, և կամ յայլմէ ումեքէ յեղափոխեալ 'ի հայ, ոչ ինչ կամակորէ զիմաստ բանին ։ Զի և բազում նմանութիւն գտանեն քննողք ընդ տիպս կերպարանաց բանից սորա և Յովհաննու Մամիկոնենի․ որով և ոչ վրիպեսցի ոք թերևս զնա կարծել թարգմանիչ գրոցս այս ։

Որպէս գրեթէ ամ̃ շարագրածք 'ի ձեռն գրչչագրաց հասեալ.ք առ մեզ, եւս առաւել սա ժամանակաց երկայնութեամբ աղաւաղեալ գտանի ։ Այլ մեք 'ի ստուգագոյն օրինակաց զտպագիրս զայս արարաք, հնգեակ օրինակաց բաղդատութ̃ ըստ կարի ուղղագրեալ ։ Ուրեք ուրեք էին եւ հատուածք ինչ, որ թէպէտ յերկս եւ 'ի չորս օրինակս պակասէին, այլ մեք ոչ թողաք զայնս 'ի բաց. որպէս զի մի զրկեսցին հնախոյզ.ք մերոյ աշխարհիս 'ի տեղեկութ̃ցն՝ որ 'ի նոսա ։ Մանաւանդ զի երեւի ուրուք 'ի յետնոց զհատուածսն զայնսիկ կրճատեալ՝ ագահելով 'ի ժամանակն եւ 'ի մագաղաթ, եւ այլոց ոմանց գրչաց 'ի նմին օրինակէ փոխադրեալ. որպէս եւ այլ երկք հնոց յաճախ իսկ զնոյն արկածս կրեցին 'ի պղերգութ̃ գրչչագրաց ։ Բայց թէպէտ եւ համարեցին հատուածքն այն յետոյ յաւելեալ, ոչ յետնոյ ինչ ուրուք թուին յաւելուածք, այլ կամ նորին իսկ մատենագրին, եւ կամ ուրուք 'ի յաջորդաց նորա, 'ի նորին վանիցն առաջնորդաց ։

# ԶԵՆՈԲԱՅ ԳԼԱԿԱՅ

## ԱՍՈՐԻՈՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՐՕՆՈՅ

Պատճէն առաջին սրբոյն Գրիգորի զոր առաքեաց 'ի Կեսարիա առ Ղեւոնդէ :

ՕԱՌ Ի ՎԵՐՄԻՈՍ պատուեալ է 'ի մարդկանէ գալիլոյ, երկցս երանեալ անուամբ եւ աստուածարեալ սրբոյ Հայրապետին Ղեւոնդեայ, մեծարգոյ [1] եւ պատուականն հօյակապ քաղաքին Կեսարեան քահանայապետ, առ 'ի ձեր սրբոյ ձեռնադրութենէդ եւ 'ի մեր փանաքիմացութենէս առաջին թուղթ՝ ողջունիւ եւ սրբութի՟ հասցէ ձերում փառաւորութեանդ, եւ ապա բոլոր տիեզերաց :

ՅՈՅԺ գոհանամք զՔեզ, որ հայրախնամ ողորմութեամբն իւրով գթացաւ յազգս մարդկան Իշխանն Որդւոյ իւրոյ միածնի. որ զմեզ ազգս հրաւիրեաց յերկնայինն քաղաքն 'ի ձեռն առաքելական քարոզութեան, յորում այժմ աշխարհի կարի առաւել մանն պարծանաց եհաս : Զի երկոքեան ամոլքն առաւ եկեալք, եւ սուրբն սահմանի վկայակի՝ Հոգւոյն բանիւ 'ի ձեռն Նորին շնորհաց. որ թէպէտ եւ առ Նորօք վերջացան 'ի Ճշմարտութէ, սակայն կամք ողորմութեն

1 'ի միում եւեթ օրինակի Մեծարգոյ :

ծայ գլխացաւ առ մեր նուաստութիւս. ըստ որում և գործեաց ազանիչելըս 'ի մերում ժամանակի, որ զօրինակն դուք 'ի մեզանէն իսկ լուայք և ծանեայք: Մանաւանդ կրկին գոհութիւն ձեւք ծայ մատուցանեմք, առաւել և ձեզ օրհնութիւն, զի զգանձն կենաց շնորհեցէք երկրիս Հայոց, զմիջնորդն ծայ և մարդկան զնշխար սրբոյն Յովհաննու Մկրտչին. որով և ցնծայ յոյժ երկիրս Հայոց սորա գալստեամբս, որպէս և անդ Քրիստոսի գալստեամբն 'ի Յորդանան: Նաև զայս գիտութիւն ստուգիւ ձեզ ծանուցանեմք, զի որպէս Քրիստոսի իջմամբն 'ի Ջուրսն՝ մահ կորեաւ, նոյնպէս և աստ 'ի սորա գալստեանն՝ դժոխոց դրունքն խորտակեցան: Զի է աստ յերկրիս Հայոց 'ի չորրորդ բաժինս և յերրորդ Հայոց աւարտին, 'ի լերինն՝ որ կոչի Տաւրոս, և հատեալ անցանէ[1] մինչև 'ի դրունս Պահաւայ Պարսից. և առ սովաւ բնակի երկիրն Մամիկոնէից, բազում վայելուչ տեղօք, և ծառատունկ պտղոյից. որ և աստ իսկ որջացեալ էր մահ յերկուս տեղիս[2]:

Նաև այնչափ որջացեալ էր 'ի միում վայրի, մինչև 'ի սրբոյ Հոգւոյն յայտնեալ՝ եթէ նա իսկ է դրունք դժոխոց, զոր իննակնեան կոչեն տեղւոյն հնդիկք և պարսիկք: Յոր պանծային յոյժ բնակիչք երկրին վասն Գիսանեայ կռոցն, և նորին եղբօրն Դեմետրեայ. ուստի յոյժ բունեալ էր սատանայ 'ի նոյն: Կործանեցաք զպատկերս սատանայի, և եդաք 'ի նոյն տեղւոջ մատրանի[3] զնշխարս սրբոյ Կարապետին Յովաննու և Աթանագինեայ վկայի, ուստի 'ի վայր կործանեցաւ մահ իւրով կարողութեամբն, և այժմ ծայ երկրպագեալ պատուի:

'Ի նոյն իննակնեան տեղւոջն թողի զերկուսին կենդանիսն զԱնտոնն և զԿրօնիդէս, զորս դու ըստ սիրոյ քո ընծայեցեր զնոսա աշխարհիս Հայոց: Որոց և եղեալ իսկ են զիւրեանց մարմինս կենդանի 'ի խաչելանել ընդ Քրիստոսի վասն այլոց օգուտի մնալոց 'ի մարմ-

1 Յերկուս օրինակս անց է:

2 'Ի չորս օրինակս առ սովաւ Բնակի յերկրին կամ Երկրին Մամիկոնէից. և առ Բազում վայելուչ կայ փեղօք, կայ յերկուս փեղիս:

3 Յերկուս օրինակս Մատրանայ:

նի. զոր իբրև զանգիւտ մարգարիտ համարիմ զնո-
սա տուեալ ինձ։ Այլ ըստ սիրոյ մտերմութեանդ քո
զոր ունիս առ մեզ, աղաչեմ զի մի ևս ընծայս այլ
մատուցանես ինձ։ Ոչ ի հունձք բազում են և մշակք
սակաւք. այլ աղաչեմք զձեզ, զի հանցես մշակս 'ի
հունձս յայսոսիկ։ Յորոց մին մշակն, զոր խնդրեմք
'ի քէն, Եղիազարոս է. և միւսն՝ եղբայր Յակոբայ
ասորւոյ[1], զոր ընդ իս ածեալ՝ ձեռնադրեցի եպիս-
կոպոս մամիկոնէից տանն։ Արդ և զդա յղեսցես,
հանդերձ այլ մշակօք, մանաւանդ և զՏիմոթէոս ազ-
դենացւոց եպիսկոպոսն յղեսցես. զոր դու իսկ գո-
վէիր զհմտութի՟ դպրութե՟ն, որ էր յոյժ իսկ պիտա-
նի երկրիս մերում, օգնականութի՟ գտեալ 'ի քէն ա-
ղօթիւք և խրատուք։

Ուստի և յարաժամ ճգնութ՟բ բազմաց օրինակ
գոլով, և դաստիարակ ելով շնորհիւ ա՟ն, ողջ լեցիս
բաւական բազմաց օգնականութեան 'ի տ՟ր, և մերոյ
բարեխօսութ՟ս. ամէն։

Պատճէն երկրորդ. պատասխանի զթղթոյ սրբոյն Գրիգորի, զոր յղեաց
Կեսարու հայրապետն 'ի ժամ վախճանի իւրոյ։

ՍՐՁԱՆԻԿ և ա՟ծարեալ Տեառն եղբօրդ.

ՍՀԱՍ առ մեզ նոր և ուրախարար գիր քո, և յոյժ
անթերի ուրախութ՟բ լցոյց զվշտագնեալ անձն իմ։
Որ թէպէտ վասն տրտմութե՟ս հասանելոյ 'ի վշտի էի,
սակայն շարժեալ զմեր դանդաղութի՟ս ձեր գոհութե՟
նամակն. զոր ընթերցեալ՝ գոհութիւն մատուցի ա՟յ
ըստ գրեցելոյ 'ի քէն, որ ոչ անտես արար ա՟ծ զազգս
հիւսիսականս. որք զրկեալք բազում ժամանակս 'ի
ճշմարտութ՟էն, զմոլորեցուցիչս իւրեանց ա՟ծ համա-

1 Յերկս օրինակս և միւսն՝ զորօծեալ յձեռնադրեցի եպիսկոպոս՝ եղ-
բայր Յակոբայ ասորւոյ ևն։

րեցին ։ Այլ զայն ուսոյց նոցա հակառակամարտն ճշմարտութե սատանայ . զի ընդ խաւար ընթացեալք , զրկեալք լինէին յաստուածածանօթութենէն ։ Նաև 'ի դէպ եկեալ նոցա մարգարէին բան , թէ « Ժողովուրդ որ նստէր 'ի խաւարի՝ տեսին զլոյս մեծ աստուածգիտութե » ։ Որ թէպէտ 'ի վաղ իսկ ծագեաց արեգակն արդարութե ընդ արարածս , սակայն ազգքդ քո 'ի տունջեան իբրև 'ի գիշերի զորմ խարխափեալք[1] ։ Աստի և այժմ դեռ հայեցաւ 'ի դոսա ած , և էջ փրկել զդոսա 'ի ձեռաց անմարմին փարաւոնի . զի վերագոյն դատար տանջանօք քան զՄովսէս՝ ոչ խնայելով 'ի մարմնոյ քո , մինչև ազատեալ հաներ յանապատն Սինա յանկոխն դաշտանաց , ուստի հալածական լինէին ցաւք և հեծութիւնք ։

Այլ արդ քանզի քև ծագեաց արեգակն արդարութեան Քս 'ի դոսա , և դու ընդրեցար 'ի տեղի ընդրելոց սրբոց առաքելոցն Բարթողիմէոսի և Թադէոսի , յիշեա զնոցա նահատակութիւն ; և մի երբէք վերջասցիս 'ի շաւղաց նոցա . զի և չիք ինչ պատճառս , զի ետ զդոսա տր 'ի շինել և ոչ 'ի քակել . քանզի և 'ի սկզբան իսկ է մաւտ Կարապետիդ յաշխարհդ Հայոց ։ Որ և զիմ անուանս գրեսջիր 'ի քո դպրութեանդ . և գրեսցես , զի և այնու մասն օրհնութեան ընկալայց յետ քո ։

Նաև և խրատ բարեաց տամ ձեզ . զհնձակնեան տեղիսդ , զոր բարեբուղխ ասեն ոմանք , շինեսջիր զդա բնակութի դասուց կրօնաւորաց ։ Այլ կացուցանես զդոսա ըստ օրինակի այսր կրօնաւորացս , զոր տեսեր 'ի մերում վիճակիս . զոր և 'ի սրբոյն Անտոնէ ուսցիս զկարգ ճգնութեանն , զի ոչ ինչ պակաս է քան զառաջինն Անտոն ։ Զոր և ես քեզ օգնութի համարիմ զայն . զի զԱնթիփան աշակերտ սրբոյն Անտոնի հաւանեցուցի գալ 'ի նոյն հնձակնեան տեղին , ունելով ընդ ինքեան ընդիրս արս քառասուն՝ ճգնաւորս խարազնազգեստս , պարկեշտ վարուք և հրաժարեալս յաշխարհէս . զոր առեալ կացուցանես զԱնթիփան՝ դոցա և այլոց եղբարցդ վերակացու ։ Այլ դրոշմեսջիր

1 Յերկս օրինակս խարխարեալս ։

արձանն յաւիտենից, զի մի՛ ոք 'ի դաստակերտս կամ 'ի գիւղաքաղաքս զօրէն աղէքսանդրացւոցն գործեսցէ, շինելով իւրաքանչիւր ումեք զտէրունական տաճարն, և առանձինն բնակել: Նաև ժողովեսցես 'ի նոյն տեղի հարիւր արանց չափ, որոշեսցես 'ի նոսա զգեւղս և աւանս մեծամեծս, որպէս զի պէտք վանացն 'ի նոցանէ վճարեսցի, և ինքեանք միայն աղօթից և ճգնութեան պարապեսցին:

Նորատես և զիշխանութ. զայդոսիկ լինել եկեղեցւոյ զարդս, աղքատասէրս, կրօնաւորասէրս և երկիւղածս: Իսկ զշինուածս մատրանն մի՛ շինեսցես ընակութին կրօնաւորացդ, այլ կացուսցես 'ի նմա քահանայս և քորեպիսկոպոս: Որոշեսցի նմա դաստակերտս, և շինեսցես 'ի նմա աղքատանոցս. որպէս զի որք դայցեն 'ի բժշկութի, մի՛ լիցի տրտունջ. որպէս առ դրան խորանին ննջեցուցանելին զուխտաւորսն: Զայս տմ ըստ այսմ օրինակի տուր գործել:

Այլ վասն Տիմոթէի և Եղիազարու եպիսկոպոսացն, զոր յինէն աղաչանօք էիր խնդրեալ, նոքա յայնժամ էին գնացեալ՝ մինչ դեռ զբագինսն կործանեցեր, և մեզ հարցման պատասխանն [1] էիք արձակեալ: Վասնզի Եղիազար գնաց 'ի քաղաքէ իւրմէ փախստական, զի յարեան [2] 'ի վերայ հերետիկոսայքն և հալածեցին զնա 'ի կողմանս Հռոմայ: Իսկ զՏիմոթէոս լուայ թէ գնաց 'ի կողմանս Երուսաղէմի վասն աւետարանին թարգմանելոյ 'ի հելլենացի գիր: Այլ ես իսկ 'ի ցաւս մահու անկեալ կամ, և ոչ գիտեմ զկենացս յերկարութի. և վասն այսորիկ դանդաղիմ իսկ և գրել առ նոսա թուղթս: Բայց դուք գրեցէք առ նոսա զնշան արանց [3] ձերոց և զտեղացդ վայելչութի: Նոցա առաւել ստուգիւ գրեսջիք՝ եթէ զինչ էր պատերազմն ձեր և քրմացն, մինչ երթայիքն 'ի մէնջ: Դարձեալ ցուցցես [4] զնշխարացն վայրս ծածուկ գրով, զի մի՛ թերութիւն լինի լսողաց՝ կարծելով եթէ երևեալ են չէին:

1 Յերկուս օրինակս պատասխանիս՝ ձերոց:
2 Յերկուս օրինակս և յարեան:
3 'ի չորս օրինակս փոխանակ[illegible] լսամ գրոցն, և 'ի մի այլ գրոցն:
4 Յերկուս օրինակս ցուցցես, յայտ

Արդ զմինչ եթէ գիտել կամիս զորպիսութենէ, մահու անկն ունիմք և կենաց վճար։ Բայց թէպէտ և արտաքին մարդս մեր ապականի, սակայն ներքինն վերանորոգումն կենաց սկսանի։ Եւ զմեր պակասութիւն տացէ տր ած ձեզ, զի զանձամբ առեալ հօտդ 'ի բանաւոր փարախդ վերին Սիոնի փոխարկել. որով և աղօթիւք քոյովք և 'ի մեր հօտս խնայեսցէ Քս. զի յերևել հօտապետին, առցուք և մեք վարձս ընդ առաջին մշակացն։ Ողջ լերուք 'ի տր։

ԵՒ իբրև դարձան պատգամաւորքն առ տէրն Գրիգորիոս, ոչ գտին զնոսա 'ի Տարօն. այլ անցեալ գնացին 'ի կողմանս Հաշտենից՝ յարարատեան գաւառն 'ի Վաղարշապատ քաղաք. և հասեալ զնամակն մատուցին առաջի ժողովրդեանն։ Զոր ընթերցեալ, տրտմեցան յոյժ հանդերձ Թագաւորաւն. առաւել վասն հալածանացն Աշխադարու, և հեռանալոյն յերկրէն իւրեանց։

Եւ գրեաց ինքն և Թագաւորն և գահերէց իշխանքն [1] չորեսին յԱշխադարն Նիւստրացոց եպիսկոպոսն և Տիմոթէոս ագդէնացոց եպիսկոպոսն օրինակ զայս։

ՏԵԱՌՆ սիրեցեալ եղբարցդ, և հեռացեալ մշակացդ վասն բանին կենաց, 'ի տր ողջոյն ասեմք հանդերձ Տրդատաւն և ամ իշխանօքս։

ԱՄԵՆԱՅՆ ոք, որ զածային մշակութիւն յանձն առնու, հալածական [2] պարտ է լինել. զի ոչ առ ամենեսեան ընդունելի է նորա քարոզութիւնն։ Որպէս այժմ զձէնջ իսկ լուաք, զի ելեալ էք 'ի ձերմէ բնակութենէդ. յանձն առէք լինել օտար 'ի վայրուց և ծանօթից, ոչ ինչ զմտաւ ածելով զպանդխտութեն ժամանակս։ Արդ դէմ եդեալ գնացէք, և ոչ գիտէք յով չոգայք։ Արդ վասն պանդխտութեն երանեմք ձեզ. իսկ վասն իմաստութեն, ոչ։ Զի մինչ գի-

1 Յերկու օրինակս իշխանն, յայլ լում չորեքին գահերէց իշխանօքն։

2 Յերկուս օրինակս հալածան, [illegible] 'ի հալածանս։

տեսիք զԹագաւորս քրիստոսական հաւատով լցեալ, և զաշխարհս յածպաշտութիւն, յօտար և 'ի տարագէմ երկիրդ ընդէ՞ր եղէք հալածական . մանաւանդ զի գիտէիք, եԹէ ամ գաւառացս եպիսկոպոս պիտոյ են և քահանայս : Զի Թէպէտ ոմանք, որք ուստեք ուստեք եկեալ են ժողովեալ, բայց զի՞նչ են այսքիկ առ վեցհարեւր և քսան գաւառս հայոց . որ և գաւառին մէն մի քահանայ կամ երկու լոկ Թէ հանդիպի : Զի դեռ մանկունք երկրիս 'ի դպրոց են, և ոչ ոք 'ի նոցանէ բաւական քահանայուԹե : Իսկ դուք զայդչափ բազում քահանայս առեալ՝ տարադէմ և հեռի ուղեգնացուԹ եմուք զձեզ, և արդ 'ի ձեռամբ երկրիդ այլ չունիք դառնալ :

Արդ աղաչեմք զձեզ, 'ի մէնջ մի՛ վերջանայք . այլ ամ վստահուԹ փուԹացարուք գալ զկնի արանցդ, զոր յղեցաք առ ձեզ : Իսկ եԹէ դայցէք, զամ երկիրդ Սրկեղեաց և հայրքայ ձեր առաջի առնեմք . յոր վիճակ և բնակեսջիք՝ ձեր եղիցի և որք զկնի ձեր, որչափ կենդանի էք դուք և մեք : Իսկ երկիրն մամիկոնէից եԹէ հաճոյ Թուեսցի ձեզ, որպէս և դու իսկ ասէիր՝ եԹէ զինակնեան տեղիսն ինձ տուր, և անդ զքո եղբայրն իսկ եմ ձեռնադրեալ եպիսկոպոս, և ըստ կարի աղաչանաց զանուն տեղւոյն փոխեցաք յիւր անելի անուանն : Իսկ այնչափ ջերմագոյն է 'ի սպասաւորուԹի սուրբ Կարապետին, մինչ զամ շինուածս վանացն քարուկիր է եղեալ. և Թուի ինձ Թէ մինչև 'ի մահ ումեք չկամի տալ : Այլ մեզ ոչ է արժան առնուլ 'ի նմանէ, զի աշխատեալ է առանց այլոց սատարուԹե . ինքն շինեաց զեկեղեցին, զոր ես միայն հիմնարկեցի : Սակայն եԹէ ինքն տացէ, 'ի մէնջ լիով է, զի այլ ես յաւելում 'ի դաստակերտս : Ապա եԹէ զայն ոչ, սակայն ամ երկիրն առաջի ձեր է . զոր և տեսանէք տեղի վայելուչ, այն ձեզ . յորմէ ոչ ինչ պակաս գտանէք 'ի մէնջ քան զասացեալն .

Ողջ լերուք 'ի քր :

## ԱՌԱՔՈՒՄՆ ԹՂԹՈՅՆ

ԱՊԱ ԱՌԵԱԼ տարան զթուղթն առաքեալքն այնոքիկ, որք 'ի Կեսարիայն եկին. և տարան 'ի մինչ 'ի Մուրհա և 'ի Կեսարիա, և դարձան՝ և ոչ գտին անդ։ Ապա անտի եղեալ գնացին յԵրուսաղէմ. և չհանդիպեցեալ նոցա, տեղեկացան 'ի նոցանէ՝ եթէ 'ի Հռոմ գնացին երկոքեանն։ Ապա իբրև նոքա 'ի Հռոմ գնացին, Եղիազար 'ի Միջագետս Ասորոց էր գնացեալ վասն թարգմանութեան երկոտասան մարգարէիցն։ Իսկ Բենիամր և Մնասաս և Գայիոս Եգիպտոսի եպիսկոպոսքն իբրև առին զթուղթն, յոյժ ուրախ եղեն և խնդացին. քանզի նոքա հալածական շրջէին զկնի Եղիազարու։

Ապա փութացեալ գրեցին վասն բանին յայլ նամակ, և յուղարկեցին առ Տիմոթէոս 'ի Կորնթոս. և կոչեցին ընդ նմա և զՄաքիկոս սարկաւագն, որ յոյժ հմուտ էր բազում գրքոց. և իւքեանք եկին 'ի Միջագետս, և ոչ գտին անդ զԵղիազարոս։ Ապա դարձան յԵրուսաղէմ. մեւս պատճառ՝ վասն նորա, և մեւս՝ վասն քննութեան աղանդոյն Մանանդրեի. որ և յայնժամ բազումք դեռ ունէին զնորա աղծուլին։ Իբրև գնացին անդ, զԵղիազար ոչ գտին. և 'ի նոյն աւուրն վախճանեցաւ Երուսաղէմի հայրապետն. զոր հաճոյ թուեալ երուսաղէմացւոյն, առեալ ձեռնադրեցին զԳայիոս Երուսաղէմի հայրապետ. և Բենիամր և Մնասաս դարձան 'ի Կեսարիա։ Իսկ Եղիազար եկեալ, 'ի ճանապարհին հանդիպեցաւ սրբոյն Գրիգորի և Տրդատայ. և խնդացեալ յոյժ դարձաւ զկնի նոցա մինչև 'ի Հռոմ քաղաք։ Ապա անդ կացեալ բազում աւուրս, առեալ խնդրեաց 'ի նշխարաց սրբոց առաքելոյն մասն ինչ, զաջ ձեռն Անդրէի առաքելոյն և Ղուկասու աւետարանչին։ Զոր առեալ, մեծաւ խնդութեամբ դարձան յաշխարհն Հայոց. և Տրդատ անցեալ գնաց յաշխարհն իւր յարարատեան քաղաք։

Իսկ սբն Գրիգոր մնաց ժամանակս ինչ 'ի Տարօն՝ ընդ իւր ունելով զնշխարս սրբ առաքելոցն, դասա-

ըեալ աւուրս քսան և հինգ 'ի լանս Գըլ...
նակնեան անգիւն Գիսանեայ կռոցն, ...
խարաց սրբոց Կարապետին ։ Այլ ա... ...անս
մամիկոնէից տանն, անսանել անդէ վայելուչ և լեռ-
նաքնակ. զոր երթեալ խուզեցին աւուրս բազումս,
և ոչ գտին անդէ պատշաճ 'ի յամենայն գաւառսն,
և դարձան ունայն ։ Իսկ տէրն Գրիգոր հրամայեաց
պաշտօնէիցն աղօթք առնել յերեկորեայ. և ինքն
մնեալ յեկեղեցին, տարածեաց զձեռս իւր առաջի
նշխարաց սրբոց առաքելոցն և առաջի տապանի տր
Կարապետին, և խնդրեաց յոյժ այսպէս.

Տէր տծ բազմագութ և ողորմած, որ քննես զեր-
բաւունս և պարգևես զողորմութիւն. որ յիշեցեր
զազգս մարդկան զմոռացեալս 'ի գթութեանց քոց,
և ոչ բարկացար 'ի սպառ, և ոչ անտես արարեր յա-
ւիտեան. այլ կարգեցեր զիս 'ի պաշտաման քահա-
նայութեան այսմիկ, և ետուր մեզ ժամանակ՝ հաստա-
տանել իրաւունս առաջին հարցն մերոց, որք դիմա-
դարձ գտան տր աւետարանին քարոզութե ։ Որոց տի-
րեաց մահ մեղաց և կորուստ ապականութե, և ըմ-
բռնեալ մահու՝ կապեաց զամենեսին ընդ անիծիւք,
արժանացուցեալ զնոսա դժոխոց կայանին. զորս հա-
ւանեցուցեալ չարն մնալ յունայնութե իւրե 'ի ճըշ-
մարտութենէ ։ Իսկ մեզ շնորհեցեր ծանօթս լինել
անուանդ քո, և ժառանգ արքայութեդ երկնից ընդ
սրբոց առաքելոցն. և արարեր խաղաղութի առ հե-
ռաւորս և մերձաւորս գալստեամբ միածնի քո, և
քարոզութբ տր առաքելոցն, որք բաժանեցին զամ
արարածս շրջագայութբ աւետարանին ։ Առաւել
զորս յայսմ աշխարհի արարեր զկամս ողորմութեան
քո 'ի ձեռն սուրբ Կարապետին, որ բաժանեաց իւր
մարմնովն զամ աշխարհս ։ Մանաւանդ զի առաւե-
լապէս գթութիւն քո հաճեցաւ բնակիլ 'ի տաճարս
յայսմիկ, որ առաջին հիմնարկութիւն շնորհեցաւ ինձ
յանկնարկութենէ քումմէ՝ առնել 'ի տեղւոջս յայս-
միկ, յոր հիմն հաւատոյս մերոյ խարսխեալ մնասցէ
անդրդուելի մինչև 'ի վերջին օրն՝ յորժամ գաս և
նորոգես զսա անապական, դու տր ։ Այլ միջնորդ է
սա սուրբ և ճշմարտութե, և դարձեալ նշանեցոյ

է սա ընդ աջմէ միածնի քո 'ի փառս անճառելիս։ Պ՝ու, որ զօրութեց, հայեաց յերկնից 'ի պատրաստ[ական] բնակութէ քումմէ, և յայտնեա տեղի բնակութե[ան] նշխարաց սրբոց առաքելոցն քոց 'ի յերկրիս յայսմիկ 'ի գովութի մեծի տէրութեդ. և 'ի պատիւ ածութե[ան] քո, 'ի փառս ամենասուրբ երրորդութեանդ։

Եւ իբրև կատարեաց զաղօթսն, յայտնեցաւ նմա հրեշտակ այն և ասէ. Յարուցեալ երթիցես 'ի սա[ր]րոտ լերինն Տաւրոսի, և ցուցից քեզ տեղի՝ ուր հա-ճեցաւ որ բնակիլ սրբոցդ։ Եւ նորա խնդութբ ար-տաքս ելեալ՝ էառ զնշխարս 'նց առաքելոցն, և գնաց 'ի նոյն տեղի՝ ուր եցոյց նմա հրեշտակ այն. և աղօ-թեալ 'ի տեղւոջն, եառ պատրաստել զնիւթ շինուա-ծոյն 'նց վկայարանին. և եդ անդ զբերեալ մասն 'նց առաքելոցն։ Եւ կարգեալ անդ պաշտօնեայս եկե-ղեցւոյն արս երկոտասան, և եա զտեղին զայն Եղիա-զարու, և անուանեցին զնա Եղիազարու վանք։ Եւ տօն մեծ կատարեալ 'ի տեղւոջն զօրն բնակութեան սրբոցն՝ հանդերձ աշխարհախումբ. ժողովովքն, յո-րում բազում բժշկութիք եղեն։

Արդ 'ի սոյն ժամանակս Անեկտոր և Անաստաս 'ի Բուզանդիա հանդիպեալ ումանց՝ որք յԱշտիշատն Տարօնոյ էին, անդ երթեալ տային նոցա զրոյց զա-ռաջին պատերազմէն՝ մինչ գայր 'նքն Գրիգոր 'ի Տա-րօն, և թէ զիարդ դարձան նոցա ընդդէմ քուրմքն՝ որ 'ի տեղիսն Գիսանեայ։ Նոյնպէս և զերկրորդ պա-տերազմն՝ որ եղև ընդ Տրդատ և ընդ իշխանն հիւ-սիսոյ. զոր Յոյնք լուեալ, զարմացան ընդ քաջութե[ան] արքայեն Հայոց Տրդատայ։ Զայս ամ իբրև լուան Անեկտոր և Անաստաս և Աքիւղաս և Մարկեղիոս, զարմացան. զտեղի առեալ անդ աւուրս ինչ, գրեցին թուղթ առ 'նքն Գրիգորիոս օրհնակ զայս.

ԱՐԲԱԶԱՆ և ածարեալ և փառաւորեալ հայրա-պետիդ Հայոց մեծաց ողջոյն 'ի տր։

ԶԱՌ Ի ՍՐԲՈՑ հայրապետէդ անթերի սիրով և հոգեխառն միաբանութբ զպատուական աջոյ գիր ըն-թերցաք 'ի Հռոմ քաղաքի. և յոյժ ուրախութբ.

լցեալ՝ գոհացաք զա̃յ, և կամեցաք զկնի կոչնակացդ[1] գալ։ Այլ պատճառ արգելմանս մերոյ Եղիազար եղև, որ 'ի Միջագետս շրջէր. զոր, եկեալ 'ի Հառանայ, ոչ գտաք զնա անդ։ Այլ հարկ եղև վասն նորա և վասն տեղեացն Երուսաղեմի երթալ առ Տ̃ն Սիմաքոս. զոր ըստ ա̃յ տեսչութեան զԳայիոս Երուսաղեմի հայրապետն ձեռնադրեցին փոխանակ նորա, որ վախճանեցաւ։ Եւ մեք աւասիկ եմք 'ի Բիւզանդիա. վասն զի ադդենացոց եպիսկոպոսն գնացեալ է յԱնտիոքոս, և ջանս ունի համոզել զնոսա 'ի խաղաղութիւն որք հալածական արարին զմեզ։ Քանզի գրեալ է առ մեզ, եթէ զքաղաքս եսուն ադդենացիք 'ի յիմ ձեռս, բայց նիւստրացիքն ընդդէմ դարձան. արդ մնացէք դուք 'ի Բիւզանդիա, մինչև ես յայլ քաղաք երթամ։ Արդ մեք վասն այդր դանդաղիմք գալ. զի երկիրդ հեռի է, և մեք անկար 'ի նուաղ կենացս և 'ի պանդխտութենէ, և Բեկտոր տանջի 'ի ջերմութէս, և Տ̃ն Մարկեղէս աստ վատեալ է յաչացն։

Բայց արդ աղաչեմ զքեզ, երջանիկ մշակդ ա̃յ, զի հրամայեսցես միում 'ի պաշտօնէիցդ քոց՝ մեզ գրով առաքել զբուցատրութիւն ձերում ճանապարհորդութեանն, և զգալն յերկիրդ Հայոց, և զառաջինն պատերազմն՝ որ 'ի քրմաց անդի, և զերկրորդ գալն 'ի Հռոմայ, և զայն պատերազմն՝ որ 'ի հիւսիսականաց անդի, և զնշխարացն՝ զոր տարեալ ես՝ եթէ ուր եդեալ ես, կամ զոր պաշտօնեայս թողեալ ես առ նա. և եթէ ունեք յայտնի, որպէս ասեն ոմանք, թէ ոչ. և զԱրօնիդէս և զԱնտոն ուր ես թողեալ, որով պարծին եկեղեցիք նոցա սրբութե̃ք. և կամ թէ զինչ եղև Անդիփան աշակերտ նոցա, և կամ ուր Եղիազար և Զենոբ։ Զայս ամ̃ մտադիւ գրեսջիր առ մեզ, աղաչեմք. և զի յերթալն մեզ առ Տիմոթէոս եպիսկոպոսն, մարթասցուք տեղեկացուցանել զնոսա գրով։ Այս ամ̃ մեզ պիտանի է, և ձեզ ոչ դանդաղելի։ Եւ շնորհք Տ̃ն Հոգւոյն մնասցէ 'ի վերայ հաւատացելոցդ։

1 Յերկուս օրինակս կոչնականացդ։

Արդ իբրև ընթերցաւ զթուղթն սուրբն Գրիգոր, հրամայեաց Զենոբայ Ասորւոյ գրել զառաջինն պատերազմին և զերկրորդն ստուգիւ, և զնշխարացն՝ թէ ուր եդաւ, և զԴնտան և զԿրօնիդէս՝ թէ որպէս վարեն, կամ ուր են։ Բայց յականէ յանուանէ, ասէ, զնշանն բլրոցն և զլերինն և զարանցն, որ 'ի պատերազմին գրգռեալ՝ զկուռսն ոչ տային կործանել. զայս ամենայն պատմութիւն գրեսցես և առաքեսցես ։ Իսկ Զենոբ աղաչէ սկիզբն առնել պատմութեանն նախ 'ի մահուն Խոսրովայ, և անտի ոճով գրել զամենայն ։ Զոր ոչ հաւանեցաւ տէրն Գրիգոր, այլ բաւական համարեցաւ զայն միայն գրել ։ Զի ոչ է, ասէ, օրէն զայդչափ պատմութիւն[1] յԱսորոց թուղթն գրել, և յիշատակ Հայոց ոչ թողուլ. այլ միայն զոր մերքանք խնդրեցին, զայն յուղարկեսցես գրով ։ Զոր հաւանեալ Զենոբայ, առեալ գրեաց առ եպիսկոպոսս Ասորոց միայն լոկ զոր ինչ առ իւրեանց սահմանօքն գործեցան ։

1 Յերկուս օրինակս զառաջին պատմութիւն։

# ՊԱՏԱՍԽԱՆԻ ԶԵՆՈԲԱՑ

## ՑՈՒՑԱՆԵԼ ԶՊԱՏՃԱՌ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՆ

Տեառն և սիրելի երջանիկ եպիսկոպոսացդ, 'ի Զենոբայ յանարժան ծառայէ առ ձեր սրբութիւնդ, և հայաստանեայցս յոյժ սիրով ողջոյն 'ի տր̄։

Յորժամ պատուական աջոյ ձեռամբն ձերոյ գիր ընթերցաւ առաջի սրբոյ հայրապետին Գրիգորի, անթերի ուրախութ̄ գոհացաք զնմ̄, զի դադարեաց հալածանքդ 'ի կողմանցդ յայդցանէ։ Եւ իսկոյն ձեռն 'ի գործ հրամայեաց արկանել պատճէնին պատասխանւոյ, որչափ և հարցման ձերոյ էր գիր։ Զոր թէպէտ և ոմանք արգելուլ հրամայեցին՝ չգրել պատասխանի վասն ձեր դալոյ, սակայն նա ոչ այնպիսի ածեալ զմտաւ, այլ աննախանձ զձեր պատասխանին յիշել։

Եւ դուք մի ինչ տաղտկէք զսակաւ պատմութիւնս, կամ եթէ Մանթանագեղոս զայդ ոչ յիշէ. զի ես յառաջագոյն գրեցի քան զնա։ Եւ որ զթագաւորաց ժամանակն չգրեցի, վասն զի տ̄ն Գրիգոր ոչ հրամայեաց այդ ինչ աւելի գրել քան զհայցուածն ձեր. մանաւանդ զի պատուիրան համարեցաւ զարշակունի[1] և զքաջ թագաւորացն գիր թողուլ տանն Հայոց, և ձեզ պատճէն պատասխանւոյ գրել. զոր ինքն անուանեաց տ̄ն Գրիգոր զայս պատճէն՝ Մյարոց. պատմութի̄։

Արդ ես սկիզբն այս պատմութեանն զձերդ եդից զհարցուածն։

1 Ցերկուս օրինակս պարթեւանի։

# ԶԵՆՈԲԱՅ ԱՍՈՐԻՈՅ

## ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՑՆ ԱՍՈՐԻՈՑ

## ԵՒ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ԻՆՆԱԿՆԵԱՆ ՏԵՂԱՑՆ ԵՒ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՈՐ ՑԱՄՁԱՆԱՑ

ԸՆԴ ԺԱՄԱՆԱԿՍ թագաւորութեանն Խոսրովայ որդւոյ Վաղարշու, վրէժխնդիր լինէր [1] Արտաւանայ եղբօր իւրոյ, և 'ի գոռալ [2] ընդ միմեանս երկուց թագաւորացն՝ արքայից Հայոց և Պարսից, սաստկացաւ մարտ պատերազմին, և զօրացաւ արքայն Հայոց. և սկսաւ տապականել զերկիրն Պարսից ամս տասն, և հիմն 'ի վեր ջանայր առնել սպանմամբ և գերութբ: Այս եղև միջնորդ արքայն Ճենաց, և ոչ կարաց զերաւել զսիրտ նորա 'ի հաշտութիւն. այլ սովով և սրով հանեալ զվրէժս եղբօրն իւրոյ, զոր եսպան արքայն Պարսից: Իսկ այր ոմն անուն Անակ, 'ի նոյն ազգէն արշակունեաց, խորհուրդ արարեալ առ արքայն Պարսից՝ գալ սպանանել զԽոսրով, և իւր վարձանս առնուլ զՊալհաւն Պարտաւայ: Զոր յանձին կալեալ արքային Պարսից, ոչ ինչ վերջանայր Պարթեւն 'ի սպանմանէն Խոսրովու. այլ յարուցեալ առնու զեղբայր իւր և զկին և զորդիս իւր, և սիրոյ պատճառաւ և փախստեան աղագաւ գայ առ Խոսրով: Այս

1 Յերկուս օրինակս մոռացեալ Արտաւանայ:

2 Յերկուս օրինակս և գոռալ. 'ի միում օրինակի գոռալոյ:

'ի կատարել երկրորդ ամին, մինչ դեռ կամէր արշաւել Խոսրով 'ի պարսիկս 'ի գարնանային ժամանակս, 'ի ժամ որոյ մեկուսի առեալ զԽոսրով Անակայ՝ որպէս թէ բան ինչ ունի ասել, յանկարծակի զէնս 'ի վերայ [1] յարուցեալ՝ զԹագաւորն դիթաւալ կացուցանէր։ Այլ ինքեանք ջրասոյզ եղեալ կործանեցան իւրայօքն ամենեքումբք, ոչ ժամանեալ 'ի Պարթեւս։ Բայց Թագաւորն Պարսից զօր մահուն Խոսրովայ տօն կարգեաց, և զՊարտաւն մնացեալ ազգին տայր Անակայ։

Արդ մինչ 'ի Պարսիցն դիմեալ գայր Անակ յԱրտազ գաւառ 'ի հանգիստ տր առաքելոյն Թադէոսի, ասեն զարգոյն Գրիգորի յղութիւն անդ լեալ. որ և զնորին մշակութեան ելից զկարգն։ Արդ մինչ 'ի խաղաղութեան էր Խոսրով, այր մի որ կոչէր Բուրդար՝ 'ի նշանաւոր ազգէն Պարսից՝ ելեալ զկնի Անակայ, և եկեալ մինչև յԱրտազ, և անդէն ելեալ գնաց պանդխտել 'ի կողմանս Գամրաց։ Այլ եկեալ 'ի Կեսարիա, և առեալ իւր կին 'ի հաւատացելոց զմեծատան ուրեմն քոյր՝ անուն Այլթաղէ, և քեռն Սոփի։ Այլ կացեալ ամ մի 'ի Կեսարիա, և դարձեալ առ զկինն իւր Բուրդարս այս, և գնաց 'ի պարսիկս։ Որոյ զհետ մտեալ Այլթաղեայ, հասանէ 'ի գաւառին այրարատեան. և դադարեալ 'ի Վաղարշապատ քաղաքի, մնանէր Սոփի սնոտու մանկանն Գրիգորի [2], և իբրև զդայեակ հաւատարմակ [illegible]էր զմեր Լուսաւորիչն։

Արդ իբրև սպան Անակ զԽոսրով, և դեռ յոգւոջ էր, հրամանն տայր Թագաւորն զազգատոհմն Անակայ 'ի սուր սուսերի մաշել։ Իսկ Բուրդարս իբրև լուաւ զայս հրամանն 'ի Թագաւորէն, փութացեալ եմուտ առ Ոգոհի կինն Անակայ, և առեալ զԳրիգոր 'ի գրկաց նորա, և ետ զնա ցկինն իւր Սոփի։ Իսկ զմիւս եղբայր նորա, որ կոչէր Սուրէն, մանկաբարձքն փախուցին 'ի դուռն Պարսից, և անդ մնաց առ հօրաքեռն իւրում, որ էր կին Թագաւորին

1 'Ի միում օրինակի 'ի վեր յարուցեալ։

2 Ցերկուս օրինակս մանկանն Գրիգորի ։

Պալհաւունի Հեփթաղի¹։ Որ երբև զարգացաւ, գնաց յերկիրն Յունաց յետ մահուան Խոսրովու Հերայ. և կացեալ անդ ամս տասն, թագաւորեաց անդ 'ի վերայ երկրին Յունաց ամս հնգետասան։ Զոր ոմանք համբաւեն՝ թէ Սգոն ասեն եղբօրն Գրիգորի, որ է Յակոբ. բայց ոչ գիտեն զստոյգն, զի Յակոբն այն հօրաքեռորդի էր որդւոյն Գրիգորի. և անուն մօրն նորա Խոսրովուհի։ Իսկ յորժամ մեռաւ մայր նորա, և զթագաւորութիւն բարձին 'ի հօրէ նորա Տիրանայ, զի եսպան զնա 'ի պատերազմի արքայն Լփնաց Ոսեգէս, ապա Յակոբ հանդերձ քերբն իւրով Արկղնեհի մնաց անդ։ Եւ յետ ժամանակաց քեռորդի նորա գնաց յաշխարհն Գութաց, և անդ թագաւորեաց. զոր յետոյ Տրդատ ըմբռնեաց, մինչ առ արքայն Յունաց էր։ Զի սա էր որ եկն 'ի պատերազմ 'ի վերայ Դիոկղետիանոսի արքային Յունաց, որպէս Ագաթանգեղոս պատմէ զայսոսիկ։ Եթէ ստուգիւ կամիս գիտել զայսոսիկ, ձիւ երանելոյն Ոսեկոսը, ընթերցիր զթագաւորութիւն Հեփթաղենեկայ Հելլենացի գրով, և կամ զթագաւորութիւնն Յունաց, զոր գտանես յՈւռհա քաղաքի առ Լարդայ² պատմագրի։

Իսկ Սուրդար առեալ զկին իւր և զմանուկն Գրիգոր, գնաց զկնի աներոյն իւրոյ Եւթաղեայ յաշխարհն կապադովկացոց. և տուեալ զնա 'ի դպրոց, ուսուցան[illegible] տայր և հելլենացի դպրութիւն և լեզու, և վարժ[illegible]էր ճգնապաշտութեան։ Երբև եղև երկոտասան[illegible]այր ոմն ճգնապաշտ՝ որ կոչէր Դաւիթ՝ ամուսնացուցանէր զնա ընդ դստերն իւրում, որ կոչէր Մարիամ։ Որդ իբրև եղեն նմա երկու որդիք, անուն անդրանկին Վրթանէս, և կրտսերոյն Արիստակէս, մայրն եմուտ 'ի վանս կանանց, և կրտսերն գնաց զհետ ճգնաւորի մի՝ որում անունն էր Նիկիմաքոս. իսկ անդրանիկն մնաց առ դայեակն իւր, և յետոյ ամուսնացաւ։

Եւ հայրն անցեալ գնաց առ Տրդատ՝ զհօրն պարտսն հատուցանել. և մնաց առ նմա մինչև նա թագաւորեաց 'ի տեղի հօրն իւրոյ. և վասն ոչ զո-

1 Յերիս օրինակս Եփթաղի։ 2 Յերկուս օրինակս Բարդէան։

հեղոյ կուոցն՝ 'ի մեծամեծ տանջանս մատնեաց զնա ։ Իբրև տեղեկացաւ 'ի քեռայ անձրոյն Գրիգորի եթէ դա է որդին Անակայ՝ որ սպան զհայրն քո զԽոսրով , և նորա արկեալ զնա 'ի վիրապն ներքին ամս հնգետասան ։ Եւ յետ հնգետասան ամին դիւագնեալ ամ երկիրն Հայոց , և ինքն թագաւորն 'ի մէջ վարազացն երթեալ դաղարէր ։ Իսկ 'ի հրամանէն այ եկեալ հանին զնա նախարարքն իւր . և նորա ելեալ ժողովեաց զնոսա առ ինքն , և հինգ[1] օր թողու զնոսա անսուաղ առաջի իւր կալով , լսելով զքարոզուե վարդապետութե նորա ։ Այս առաջին պահք եղաւ յաւուրս սրբոյն Գրիգորի . զոր 'ի Հռոմ Սեղբեստրոս հաւանեցաւ , և պահեաց ինքն և Կոստանդիանոս թագաւորն , և ամ քաղաքն Եգիպտոսի . զոր և Առաջաւորք կոչեմք ։

Եւ յորժամ լցան աւուրք պահոց նոցա , թափեցան մերթ վայրենական խոզակերպին Տրդատայ , և դիւաբնակ մարմինք զօրաց նորա ընկալան զբժշկութե ։ Ապա ձեռն 'ի գործ արկեալ՝ ուսուցանէր նոցա շինել տունս տէրունականս , և ասէ . Պարտ է քահանայս ածել , որ հովուեսցեն զձեզ ։ Իսկ հրեշտակ Տն հաւանեցոյց զնոսա , զինքն լինել նոցա հովիւ ։ Զոր յանձն առեալ , տայ 'ի ձեռս նորա իշխանս և զօրս բազումս , և առաքէ զնոսա յաշխարհն Կապադովկացւոց 'ի քաղաքն Կեսարիա , ձեռնադրիլ 'ի սըրբոյ հայրապետէն Ղեւոնդեայ ։ Եւ ե[illegible]'ի Մազարշապատ քաղաքէ՝ , անցանէին ընդ գ[illegible] Իա-սենոյ , և գային յԵրէզնաւան յԵկեղեաց գաւառին , 'ի կուռսն՝ զոր ինքն կործանեաց ։ Եւ անտի երթեալք , մտին 'ի Կեսարիա ։ Եւ ձեռնադրի 'ի մեծ հայրապետէն Ղեւոնդեայ մեծաշուք պատուով . առաքեալ նմա մեծարանս , տայ նմա զոր նշխարս Կարապետին Յովհաննու և զԱթանագինեայ վկայի ։

Բայց եթէ ով եբեր 'ի Կեսարիա զնշխարս Կարապետին . Յովհաննէս աւետարանիչն ։ Մինչ էր նա 'ի Պատմոս կղզւոյն , և եկն յԵփեսոս , և անտի երթեալ յԵրուսաղէմ՝ գտանէ զգերեզմանն նորա բառ

[1] Յերկուս օրինակս յիսուն օր ։

հրամանի առաջնորդութե̄ այ. և առեալ 'ի գիշերի զնշ մարմինն Կարապետին Յովհաննու, և ետ զՊողիկարպոս եպիսկոպոսն՝ որ էր աշակերտ իւր, և ետ տանել յԱփեսոս յեկեղեցին՝ զոր ինքն շինեաց, և կոչեաց զանուն նորա սուրբ Աստուածածին։ Եւ յետ փոխմանն աւետարանչին՝ մնաց յԱփեսոս ս̄բ նշխարքն Կարապետին, մինչև 'ի ժամանակս Դեկոսի Թագաւորի։ Եւ ապա 'ի ժամանակս նորա նստի յԱփեսոս աշակերտն Մեղետոսի Փարմելոս. և անտի հալածեալ եկն 'ի Կեսարիա, ընդ իւր ունելով զբոլորովին նշխարս ս̄բ Կարապետին, բայց միայն 'ի գլխոյն։ Եւ եդ զնա 'ի ս̄բ սրբեղանն, ոչ 'ի ծածուկ՝ այլ յայտնի. և եկաց 'ի նոյն տեղւոջն մինչև ցԹագաւորութիւն Դիոկղետիանոսի։

Եւ 'ի գալ սրբոյն Գրիգորի 'ի ձեռնադրութիւն առ Ղեւոնդ Կեսարու հայրապետն, որ Թէպէտ բազում անգամ խնդրեաց սուրբն Գրիգոր զնշխարս ս̄բ Կարապետին, ոչ էառ յանձն տալ. մինչև հրաման 'ի տ̄նէ առնոյր 'ի գիշերի վերջնումն՝ բաժանել և տալ զկէսն ցնա։ Եւ 'ի վաղիւն բազում պատերազմունս սկսաւ լինել, մինչև նախարարքն կշռեցին քահանայապետին երկոտասան հազար դահեկան, և այնպէս առեալ բռնութե̄ ելին 'ի քաղաքէն. մինչ զի խորհուրդ առեալ իշխանին Կնգեղ տանն հարկանել զքաղաքն 'ի գիշերի հրով։ Զոր իմացեալ հայրապետ[illegible]միաբանեաց զնոսա 'ի խաղաղութիւն. և փոխան[illegible]կոտասան հազար դահեկանին՝ ետ նոցա զնշխարս Աթանագինեայ, և հազիւ կարաց արձակել զնոսա հաշտութե̄ և սիրով։ Տայր և սրբոյն Գրիգորի երկու լուսաւոր ակունս, զոր էր տուեալ նմա Հռոմայ հայրապետն։

Եկեալ 'ի Կեսարիոյ՝ մնայր ժամանակս ինչ 'ի Սեբաստիա, հաւաքել զդասս կրօնաւորաց։ Եւ զոմանս վարդապետս կոչէր յԱղէքսանդրիոյ, և հրաշագան պաշտօնեայս. յորոց մին Գեկղաւիոս, զոր Գունեայ դաշտին եպիսկոպոս ձեռնադրեաց. նոյնպէս և զայլս յԱսորոց։ Ուր և զիս իսկ ոչ եԹող դառնալ 'ի Կիւատրա՝ հրաժարեալ յեղբօրէն իմմէ Եղիազարու։ Եւ անտի եկեալ անցաք մինչև 'ի Թորդան. և անդ Թո~

զաք զՍուրբնն Եփրեմացի՝ վարդապետ ամենայն գա- ւառացն ։

Այս մեք եղեալ անտի, ընդ Սարիս և ընդ Հայք կամեցաք անցանել ։ Իսկ ոմանք յիշխանացն զգա- ցուցին սրբոյն Գրիգորի, եթէ 'ի գաւառն Տարօնոյ երկուս բագինս մնացեալ են՝ որ դեռ ձօնեն դիւաց ։ Իսկ նորա դէմ եդեալ գայր, զի և զայնս քանդես- ցէ ․ և եկեալ յերկիրն Պալունեաց յաւանն մեծ Գիս- անէ 'ի քաղաքագեղն Կուառս, ոմանք 'ի քրմացն անդ հանդիպեցան ։ Այս տեղեկացեալ յիշխանէն Հաշտենից՝ եթէ առ վաղիւն կործանելոց են զմեծ աստուածսն Գիսանեայ և Դեմետրեայ, գիշերա- գնաց եղեալ 'ի տեղի աստուածոցն, և լցին զգանձս 'ի տունս գետնափորս ։ Այս իմքեանք ազդ արարին յԱշտիշատ 'ի քուրմն՝ եթէ ժողովեցէք աստ պատե- րազմող, և փութապէս վաղիւն հասէք առ մեզ, զի մեծն Գիսանէս 'ի պատերազմ եկանելոց է ընդ ու- րացեալ իշխանսն ։ Նոյնպէս և զարմն Կուառացն արեցին՝ դարձն գործել 'ի ցանկս այգեացն, և զո- մանս յանտառն դարձուցին ։ Այս որ գլխաւոր քուրմն էր, անուն Արձան, և որդւոյ նորա՝ Դեմետր, ա- ռեալ զօրս՝ որք 'ի Կուառատանն էին՝ արս իբրև չորեք հարիւր, և եկեալ 'ի վերայ լերինն՝ ուր հանդէպ Կուառացն էր, և մնացին մինչև այլ զօրքն ուստեք եկեսցեն նոցա յօգնականութիւն ։ Ելեալ 'ի վաղիւն անցանէին ընդ ստորոտ լերինն, զոր օրինակ սովոր էին առապատակել ։

Իսկ սրբոյն Գրիգորի առեալ զիշխանն Արծրու- նեաց, և զիշխանն Անձեւացեաց, և զիշխանն Անգ- ղեղ տան, և սակաւ ինչ զօրու իբրև արս երեքհա- րիւր, եկեալ յերրորդ ժամու ընդ բլուրն՝ ուր Ար- ձանն էր թագուցեալ, և գային յանհոգս եղեալ, բնաւ չուանէին կասկածս ։ Այս իբրև մերձ եղեն ընդ ելս զառ'ի վերն, յառաջ մատուցեալ Արձանն և Դեմետր, և հնչեցուցին զփողսն պատերազմին, և յանդգնաբար յարձակեցան 'ի վերայ ։ Զոր լուեալ իշխանքն՝ ընդդատեան յոյժ ․ զի յորժամ լուան երի- վարքն զձայն փողոցն, սկսան վրնջել և պատերազմ յուզել ։ Իսկ իշխանն Անգեղ տանն ձայն տուեալ ա-

ունէր • Իշխանն Սիւնեաց, յառաջ մատոյր և տես՝ զուցէ զօրք հիւսիսոյ իշխանին են : Իսկ նորա երթեալ, և ոչ կարաց գիտել՝ թէ ո՞ ով են : Դարձաւ և ասէ • Փախեա զԳրիգոր յանհօգս ուրեք, համդերձ ընկերօք իւրովք • զուցէ ըմբռնիցեն զդա, և մեք ամօթ կրիցեմք 'ի թագաւորէն : Այլ դու առաքեա զոք զկնի զօրաց մերոց, զի դարձցին յետս • քանզի ռազմ է բազում զօրաց, և բազում դրօշք երևին փողփողեալք :

Իսկ իշխանին Ընգեղ տան տայ զորդն Գրիգոր 'ի ձեռն իշխանին Սոկաց, և ասէ • Փութացո յամուրն Ողկան, մինչև տեսցուք՝ թէ զի՞նչ լինիցի • և ինքն առաքեաց զկնի զօրացն՝ ազդ առնել : Իսկ իշխանն Սոկաց առեալ զԳրիգորիոս, դառնայ ընդ զառ 'ի վայր բլերն՝ կամելով իջանել 'ի Կուառս : Իսկ այրք տեղւոյն սկսան զանց Ճանապարհին պահ ունել • զոր տեսեալ որդւոյն Գրիգորի՝ թէ մեծ վտանգ է 'ի տեղւոջն, իջուցեալ զնշխարս մերձ առ աղբեր մի յայն կոյս ձորոյն հանդէպ գեղջն, դնէր և նշանագրէր զտեղին : Այս ծածկեաց զնշխարսն, և ոչ ոք կարաց տեսանել մինչև նոյն Գրիգոր դարձաւ 'ի տեղին :

Իսկ այրք գեղջն հետամուտ եղեն մեզ • և մեք հեծեալ յիւրաքանչիւր երիվարս, փախստական գնացաք յամուրն Ողկան • և յառաջեալ քան զնոսա մտաք 'ի ներքս, քանզի ընդդէմ եկին այրք տեղւոյն, և մուծին զմեզ 'ի ներքս : Իսկ այրք գեղջն եկեալ անցին յայնկոյս 'ի քաղաքն Կուառս, և ազդ արարին նոցա զմէնջ • զոր լուեալ յայսկոյս անցին, և զամրոցն սկսան պաշարել : Իսկ մեր 'ի վարանս մտեալ, յղեցաք գիշերագնաց զոմն առ իշխանն Ընգեղ տան, և թղթով ծանուցաք զիրսն : Իսկ նորա չորեք հազար արանց ընտիր տասներաւորաց առաքեաց • որք 'ի վաղիւն եկեալ անցին յայնկոյս գետոյն : Այս յետ երից աւուրց պաշարեալ զքաղաքն աւերեցին, և զպարիսպն հիմնայատակ արարին, և զմարդիկ քաղաքին բերեալ 'ի Մեղտի անցուցին :

Իսկ իշխանքն իբրև լուան՝ եկին 'ի վերայ բլերն, և տեսին զԸրձանն, զի արս չորեքհարիւր լոկ՝ թէ աւելի կամ պակաս՝ ունէր ընդ իւրն : Սաղվաղակի 'ի վե-

բայ յարձակեալ քաջ իշխանացն, 'ի փախուստ դարձուցանէին զՄարձանն. իսկ այլ զօրքն Հայոց իբրև լուան զձայն գուժին, վաղվաղակի ամենեքեան անդր 'ի բլուրն հասանէին: Իսկ Մարձանն յառաջ մատուցեալ` սկսաւ թշնամանել զիշխանսն Հայոց, և ասէ. Յառաջ մատիք, ով դենակորոյսք, և ուրացօղք ընհայրենի աւծին, և թշնամիք բարերարին Գիսանէի. ոչ գիտէք զի այսօր Գիսանէ 'ի պատերազմ ելեալ է ընդ ձեզ, և մատնելոց է զձեզ 'ի ձեռս մեր, և հարկանելոց է զձեզ կուրութբ և մահուամբ: Իսկ իշխանն Մարծրունեաց 'ի մէջ անցեալ, ասէ. Ով որ խորոխատաղ 'ի վերայ մեր. եթէ վասն աստուածոցն մարտնչիս, սուտ ես. և եթէ վասն երկրիդ, բնաւ իսկ անմիտ ես. զի այս իշխանն է Անգեղ տան, և իշխան Սիւնեաց տանն, և այլք 'ի պատուաւորաց` զորս դուք իսկ ճանաչէք: Իսկ Պետեւոր որդի Մարձանին ասէ. Տուարուք մեզ իշխանքդ Հայոց. այս քառասուն ամ է` զի ծառայեմք մեծի աստուածոցն, և գիտեմք զզօրութի նոցա, զի ընդ թշնամիս պաշտօնէից իւրեանց ինքեանք մարտնչին: Արդ մեք պատերազմաւ ձեզ չկարեմք ընդդիմանալ. զի այս տուն է թագաւորին Հայոց, և դուք իշխանք նորա: Բայց այս ձեզ յայտնի լիցի, որ թէպէտ մեք ձեզ յաղթել ոչ կարեմք, սակայն լաւ է այսօր մեռանել 'ի վերայ աստուածոցն մերոց` քան թէ զտաճար նոցա 'ի ձէնջ ապականեալ տեսանեմք, որով և զկեանս առեցաք և զմահ սիրեցաք: Բայց որ իշխանդ ես Անգեղ տան` յառաջ մատիր, զի մենամարտեսցուք ես և դու:

Յայնժամ 'ի մէջ անցեալ իշխանն Անգեղ տան և Մարձանն, և սկսան անցանել շուրջ զմիմեամբք. և աճապարեալ Մարձանն եհար տիգաւ 'ի վերայ բարձից նորա, և մերձ տարաւ յընկենուլ զնա: Իսկ իշխանն դարձեալ 'ի վերայ նորա, ասէ. Գիտես զայս, Մարձան, զի տեղւոյս այս Մարձան են կոչելոց. զի քեզ արձանանալ պիտի յայսմ վայրի: Եւ 'ի վեր ամբարձեալ զձեռն իւր` իջուցանէր զսուրն 'ի վերայ աջոյ թիկանցն, և 'ի բաց ձգէր զպարանոցն հանդերձ ձախ թիկամբն և ուսամբն: Եւ նորա անկեալ յերկիր թաւալէր. և կատուցին արձան 'ի վերայ նորա,

և կայ 'ի թաղման 'ի նմին տեղւոջն՝ որ դեռ ևս Բարձան կոչի անուն լերինն:

Այլ մինչ այս այսպէս գործեցաւ, փութանակի եկին հասին զօրքն քրմաց 'ի Վիշապ քաղաքէ, և արք Պարտխոյ և արք Մեղտոյ ամենեքեան առ հասարակ անդր հասանէին: Այլ այլք յԱստղօնից եկեալ ընդ նոսա, ընդ ամենայնին, որպէս և ինքեանք յետոյ ասէին, հինգ հազար չորեքհարիւր և յիսուն այր:

Իբրև հասին 'ի գլուխ լերինն, ձայն գուժեաց յերկոտեան գունդն. և միաւորեալ դասք քրմացն ընդ միմեանս, յարձակեցան 'ի վերայ զօրացն Հայոց, և փախստական արարեալ իջուցին զնոսա զառ'ի վայր լերինն ընդ գեղջն կողմանէ: Իսկ արք գեղջն այնորիկ քանզի դարմանամուտք էին, ընդդէմ եկեալ մերոց զօրացն, և յերկուց կողմանց 'ի մէջ առեալ ըզզօրսն Հայոց, սկսան կոտորել: Իսկ իշխանն Մուշեղ տանն հերձեալ զքրմացն կողմն, և անցանէր յետուստ կողմանէ, և ուշ բլերն առնէր. զի անդ արք հետևակք, որ զառ'ի վերին կողմանէն էին, բազում մնաս արարին վիմօք երիվարացն: Իսկ Դեմետր իբրև ետես՝ եթէ Մուշեղ տան իշխանն 'ի բլուրն ել, թողեալ զզօրսն՝ ուշ նմա արարեալ, նոյնպէս և այլ զօրքն սկսան ձիախաղաց անդր ժողովել:

Իբրև ելին 'ի վերայ բլերն, Ճակատեցան դարձեալ առ միմեանս: Այլ կային միայն իշխանքն մեր զօրուն իւրեանց, զի դեռ ամենեքեան չէին ժողովեալ. քանզի չորեք հազար այր դեռ 'ի Մեղտի զգերիսն ունէին, իսկ երեք հազարն անցին ընդ Բասեան և ընդ Հարք. իսկ այլքն դեռ 'ի դաշտի անդ սփռեալ ասպատակէին: Այլ յորժամ Ճակատեցան առ միմեանս, և կամէին խառնել ընդ իրեար, ժամանեաց նոցա երեկոյ. և 'ի նոյն վայրի իջեալ բանակեցան մինչև ցառաւօտն: Այլ իբրև առաւօտ եղև, եկին հասին 'ի նոյն տեղի մնացեալքն[1] զօրուն Հայոց, և այլք ոմանք 'ի Տիրակատարն քաղաքէ, որպէս թէ արք հինգ հարիւր, եկին օգնել[2] քրմացն: Որդ իբրև հարստացան երկոքին

1 'ի միւում օրինակի մնացեալ որդիք զօրուն Հայոց:

2 'ի միւում օրինակի յօգն քրմացն:

կողմանցն, և էին վեց հազար ինն հարիւր քառասուն և վեց արք քրմացն, իսկ հինգ հազար և ութսուն զօրք իշխանացն Հայոց, ապա հնչեցուցին զփողս պատերազմացն, և դիմեցին իւրաքանչիւր այր 'ի դէմ առն դիպանաւորի. զառաջինն յաղթեցին զօրքն Հայոց՝ քրմացն։ Իսկ 'ի նոյն ցեղէն Դեմետրեայ իշխանն Հաշտենից, որ էր ընդ զօրսն Հայոց, կտրեալ եօթն հարիւր արամբք 'ի քրմացն կողմ եղանէր [1]. և սկըսաւ կռուել ընդ իշխանս Հայոց։ Իբրև տեսին զօրքն Հայոց զնա, լքան և յերկիւր կործանեցան. զի ախպիսի այրն այն յաղթող և հմուտ պատերազմի և կորովի, մինչ զի ամենայն իշխանքն Հայոց դողային 'ի նմանէ։ Եւ յանխնայ սկսաւ արեան ճապաղիս հանել. և ամենայն զօրքն զաղաղակ բարձին առ իշխանն Աւինեաց։ Իսկ նորա ձայն տուեալ, ասէ. Ո՛վ դայլակորիւն, յիշեցեր զբարս հօր քո, և 'ի նոյն շաղղակերութի դարձար։ Իսկ նա ասէ. Ո՛վ արծուոյ ձագ, թէպէտ ես հպարտացեալ. բայց եթէ 'ի չար [2] ակնատացս անկանիս, ես ցուցանեմ քեզ զիմ զօրութիւնս։ Իսկ իշխանն Աւինեաց չանդուրժեաց առ թշնամանսն. յարձակեալ 'ի վերայ նորա, եհար մըրճովն 'ի վերայ սաղաւարտին, և կտրեալ զնա 'ի զօրացն, և փախստական արար զնա 'ի վերայ լերինն ընդ արևելս կոյս։ Եւ հանեալ հանդէպ իննակնեան վայրուցն՝ մղեալ ընկէց յերիվարէն, և իջեալ՝ դանակաւ կտրեաց զգլուխ նորա. և զմարմինն զահավէժ արարեալ, ասէ. Տեսցեն զքեզ անդընդք, և գիտասցեն՝ եթէ արծուոյ հարեալ է զնապաստակդ։ Եւ ինքն դարձաւ։ Որ մինչև ցայսօր Արծուիք կոչեն տեղւոյն։

Իսկ իշխանն Արծրունեաց 'ի մէջ անցեալ՝ կտրեաց զքրմապետն Աշտիշատայ, որոյ անունն էր Մեփակէս [3]. և տարաւ փախստական մինչև 'ի գլուխ լե-

1 Ցերկուս օրինակս ընդ զօրսն Հայոց, հանդերձ եօթն հարեւր արամբք յայն կոյս եանց, և եղև ընդ քրմն Դեմետրեայ. և այսպէս արամբք խառնել կռուել։

2 'Ի միում եւեթ օրինակի 'ի չար ակնատացս։

3 Ցերկուս օրինակս պակասէր հատուածս որոյ անունն էր Մեփակէս։ Իսկ զանուն քրմին ուղղեցաք Մեփակէս որպէս յիշատակի 'ի տառրէ ըստ երից ձեռագրաց. զի երկու այլք ունէին Մեսակէս։

րինն՝ ընդ դիտան վայրուցն։ Այլ իբրև եհաս նմա, ընդդէմ դարձաւ Մեսակէսն, և եհար զպարձս նո-րա. իսկ նորա ջեռեալ յարենէ խոցուածքին, անձա-պարեալ կորեաց զԹիկունս, և պարանոցաւն 'ի քանց ընկէց, և զգլուխ նորա դարպաս տարաւ. զոր և Մեսա-սակող[1] կոչեն զանուն տեղւոյն։

Իսկ իշխանն Արջուց[2] փախուցեալ 'ի նոյն վայրս Թա-ղեաւ. զոր տեսեալ իշխանին Արծրունեաց՝ որպէս Թէ ընդ չքնեա[3] արար, և զնացեալ մերձեցաւ առ նա. և յանկարծակի յարձակեցաւ 'ի վերայ նորա։ Իսկ նորա փախստական եղեալ ընդ անդառն, կորձն փայ-տի էանց ընդ սիրտ նորա և ընդ լեարդն, և անդէն մեռաւ։ Իսկ նորա առեալ զերկոսին երիվարսն և դարձաւ. և անուանեցաւ տեղին այն Արջուց ձոր։

Այլ իբրև դարձաւ անտի, եկեալ հանդիպեցաւ զի Դեմետր և իշխանն Անգեղ տան մարտնչէին ընդ մե-մեանս։ Այլ նորա 'ի վերայ յարձակեալ, կորեաց զաջոյ ուս նորա, և 'ի վայր ընկէց. և կորեաց զգը-լուխ նորա, և ձգեաց 'ի մախաղ իւր. և դարձաւ։ Այլ յարձակեալ 'ի վերայ զօրացն, յանխնայ կոտո-րեալ դիԹաւալ առնէին իբրև արս հազար երեսուն և ութ. և զայլսն մերկացուցին։ Այլ 'ի նոյն պատե-րազմին եսպան Դեմետր զորդի Մոկաց իշխանին. որ և մեծ սուգ եհաս իշխանացն Հայոց։

Արդ իբրև մեռաւ Դեմետր 'ի նոյն պատերազմին, հնչեցոյց իշխանն Սիւնեաց զփողս պատերազմին 'ի խաղաղութի. և լուեցին երկոքին կողմանքն 'ի կոտո-րելոյ զմիմեանս։ Զոր իբրև տեսին արք կողմանցն, որ քուրմքն էին, աղաչեցին զիշխանսն 'ի խաղաղութի, զի Թաղեսցեն զմեռեալս իւրեանց. և Թոյլ ետուն։ Այլ ժողովեցին զՃՄ կոտորեալսն յերկոցունց կող-մանցն. և հատեալ գերեզմանս՝ լցին զնոսա 'ի ներքս, և կանգնեցին 'ի վերայ գերեզմանացն արձանս, և գրեցին 'ի նմա այսպէս.

1 'Ի միում ևեԹ օրինակի Մե-սակէս. 'ի միւս այլ Մեփսակող։

2 Ցեղիս օրինակս Արջոյ։

3 Ցեղիս օրինակս որպէս Թէ ընդ չքնէնալու արար։

ԱՌԱՋԻՆ ՊԱՏԵՐԱԶՄ ՈՐ ԵՂԵՒ ՅՈՅԺ ՍԱՍՏԻԿ
ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ԳԼԽԱՒՈՐ ԱՐՁԱՆ ՔՐՄԱՊԵՏՆ
ՈՐ ԿԱՅ ԱՅՍՐ Ի ԹԱՂՄԱՆ
ԵՒ ԸՆԴ ՆՄԱ ԱՐՍ ՀԱԶԱՐ ԵՐԵՍՈՒՆ ԵՒ ՈՒԹ
ԵՒ ԶԱՅՍ ՊԱՏԵՐԱԶՄ ԱՐԱՐԱՔ ՎԱՍՆ ԳԻՍԱՆԵԱՑ ԿՌՈՑ
ԵՒ ՎԱՍՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Զայս գրեցին ասորի և հելլենացի գրով, և յոյն և խառնայեղալի նշանաւ[1]։ Եւ ինքեանք իջին երեկօթս առնել յԻննակնեան տեղւոջն. և փութացեալ կոչնա-կան առաքին սրբոյն Գրիգորի, և ինքեանք մնացին անդէն։ Ամենք 'ի դիտանոցին մնացին, և այլ զօրքն 'ի մարգաձակին իջեանս կալեալ առ քաղցր աղբերն անտառին։

Իսկ մեք 'ի յամրոցէն ելեալ, եկաք ընդ նորին ճա-նապարհ ընդ որ փախստական գնացաք։ Իբրև եկաք 'ի վայրս գեղջն, մօտեցաք. քանզի գիշեր էր։ Բայց մինչ դեռ գայաք առ ափամբ այգեստանեացն, յան-կարծակի ծագեաց լոյս սաստիկ առաւել քան զճա-ռագայթս [illegible]կանն 'ի նշխարացն՝ զոր պահեալ էր սրբոյն Գրիգորի։ Եւ այնչափ ծագեաց, մինչև ամ բնակիչք գեղջն 'ի դուրս ընթացեալ արք և կա-նայք ծերք և տղայք 'ի տեսիլն, և հիացեալք՝ սկսան զզջանալ։ Եւ նոյնժամայն բարձեալ տարան զնշ-խարսն մինչև 'ի մէջ գեղջն, և պաշտօն ցնծութ կա-տարեալ մինչև ցառաւօտն, և 'ի վաղիւն բարձեալ՝ եկաք յԱրձանն, և ընթերցաք զգիրսն։ Եւ բազում ժամն արտասուեալ սրբոյն Գրիգորի վասն 'ի զուր կոտորածին, և ապա առեալ զաջ թևկն Մկրտչին՝ տեառնագրեաց շուրջ զամ կողմամբքն գաւառին, ասելով. Դողիցի առաջի քո 'ի վերայ երկրիս [illegible], պահել 'ի թշնամեաց. և թէ վասն մեղաց [illegible] 'ի մտնէ, սակայն թշնամիք սորա մի յերկարեսցեն, այլ շարեօք սատակեսցին։ Եւ մի հերձուածողք ընա-կեսցեն յայսմ աշխարհս. առաջ սրբոյ Կարապետին և

1 Ցերկուս օրինակս ասորի և հելլենացի և յոյն գրով, և խառնայե-ղալի նշանաւ։

զի իցէ կնիք և պահապան, և միանգամայն եղիցի տաճարս այս շինուած յաւիտենական ազգաց յազգս :

Այս տեսացեալ մեր զամենայն, ձայն դղրդի[1] եհաս յականջս մեր : Այլ իբրև եկաք իջաք յԻննակնեան տեղին, ընդ առաջ եղեն[2] մեզ իշխանքն Հայոց, աւետիս տալով մեզ՝ եթէ Դեմետր կործանեցաւ : Այլ իբրև եկաք 'ի տեղին, տեսաք զտեղի կռոցն քանդակեալ. և զկուռսն, որ հնգետասան կանգուն էր, ընդ չորս բաժանեալ : Այլ պաշտօնեայք կռոցն զազազակ բարձեալ՝ ողբային չարաչար, որ և դևքն 'ի լսելիս մարդկան կոծէին՝ ասելով. Վայ մեզ, զի և ոսկերք մարդկան մեռելոց հալածեն զմեզ յերկրէս : Այլ մարդկորէն տեսլեամբ որպէս թևաւորք ելեալ գնացին յԱշտիշատի կուռսն : Իսկ այլք 'ի դիւացն իբրև զպիծակս անհուն բազմութիւն, կամ թէ որպէս թանձրամած տապաստարափ՝ այնպէս յարձակեալք 'ի վերայ բազմութեն, և զքուրմսն առ հասարակ լլկեալ՝ թողին իբրև զմեռեալս : Այլ մատուցեալ տէրն Գրիգորի, բժշկեաց զնոսա. և հրամայեաց կործանել զԳիսանէս, քանզի պղնձի էր՝ երկոտասան կանգուն երկայնութիւն[3] : Իբրև մատեան կործանիչքն 'ի նմա[illegible], զոր տեսեալ պաշտօնէիցն՝ բա[illegible] ողբովք 'ի վերայ յարձակեալք, ասէին. Մեռցուք նախ մեք, և ապա մեծն Գիսանէս կործանեսցի : Իսկ զօրացն 'ի մէջ առեալ զքուրմսն սպանին առս վեց. և ապա կործանեցին զդուռս մեհենին : Իսկ դևքն ձայն բարձեալ, ասէին. Թէպէտ և դուք զմեզ աստի հալածէք, բայց ոչ աստ կամիմք բնակել, և նոցա մի լիցի հանգիստ : Նայց չէ անհաւատալի. զոր օրինակ ընդ դրունս քաղաքի զօրք բազում մտանեն, նոյնպէս և այս տեղիս դուռն էր դիւաց. զի այնչափ էին դևքն 'ի տեղւոջն Գիսանէ, որչափ 'ի սանդարամետս անդնդոց :

Իբրև կործանեցին զօրքն զկուռսն, սկսաւ սուրբն Գրիգոր հիմն արկանել եկեղեցւոյ : Այլ վասն զի ոչ գոյր նոցա նիւթ պատրաստ, առեալ քարինս անկազմս

1 Ցերկուս օրինակս յայն դղրդոց :
2 'Ի միում օրինակի ընդառաջին :
3 Ցերկուս օրինակս զԳիսանէս, որ էր երեսուն կանգուն երկայնութիւն, և երկու կանգուն և թզաւ մի լայնութեն պղնձի պատկերին :

և անապաշտ, և գտեալ կէր 'ի ընտանութիս կացոյն, ակնդէմ արար եկեղեցոյ 'ի տեղւոյն՝ ուր կուռքն Դեմետրեայ էր լեալ՝ ըստ Նորին չափոյ ։ Այլ արար անդ աւուրս երկոտասան, և կամէր զնշխարս որդոյ Կարապետին զամենին ասա դնել, բայց ոչ էտու հրաման 'ի նմանէ ։ Այլ զՀասարակն առեալ դնէր 'ի տապան բրտեայ[1], զի հողեղէն է և ոչ ոսկեղէն. վասն այնորիկ ոչ է պարտ ոսկով պատել զմեռեալ մարմին մարդկան ։ Այլ եդ զնոյն տապանն 'ի նոյն պղնձի տապանին. և եդ անդ զմի ակն լուսոյ, զոր եբեր 'ի Կեսարիոյ՝ անուն լիգրոն ։ Այլ ոչ եթէ յայտնապէս ումեք դնէր, այլ զտեղին 'ի ծածուկ կազմեալ, և 'ի գիշերին առեալ բրիչս ես և Ողիմպոս եպիսկոպոս, բրեցաք երկու առնաչափս, արկեալ 'ի ներքոյ խիճս քարանց, և եդաք անդ զնշխարս որդոյ Կարապետին ։ Այլ այս էին զոր եդաք. զաջ թևէն մինչև ցարմուկն, և զձախ ձեռն թիկամբն համդերձ, և զոսկր բարձուց աջակողմանն, և այլ մանր ոսկերս 'ի մարմնոյն ։ Իսկ զԱթանագինէին զգլուխն և զաջ ձեռն մինչև ցգօտին զամ հատեալ ընդ մէջ, և զնորայն եդաք 'ի կաւէ տապան ։ Որ թէ ստուգիւ կամիք իմանալ, ցՊիսիդոն թարգմանիչ անտի իսկ հարցէք, և նա ասէ ձեզ ։ Քանզի Կարապետին առ անկեան դրանն Արշակունի, թզաւ մի հեռի զտանես զբևեռանշանին 'ի մուխցն, կէս թզաւ բարձր 'ի գետնոյն և յաջմէ եկեղեցւոյն ։ Որ գրեալ է սուրբն Գրիգոր 'ի տախտակս պղնձի, և եդեալ 'ի բեմի անդ՝ թէ կէս ոք մի իշխեսցէ մտանել ընդ դրունս եկեղեցւոյդ. զի մի կոխելով զպատուական նշխարսն, անհաշտ խռովութիւն լիցի ձեզ ընդ նոսա՝ որ մտանենն և անկանիցեն ընդ նա իսկ. զոր և Պիսիդոն իսկ ընթերցեալ է զտախտակն ։

Իսկ Աթանագինէին առ նոյն սեամս հուպ ընդ ձախակողմ անկիւնին[2]. և այնպէս անյայտ կան 'ի պահեստի, զոր և թէ զտանել ոք կամի բեռնացն նշանօք՝ չէք հնար, թէ և քառասուն կանգուն փորիցեն. զի պատճառ իրացն այս եղև ։ Յորժամ պահեցաք

1 Յերկուս օրինակս Էրգինեայ ։ Գինէս [illegible] ընդ ջախս

2 Յերիս օրինակս իսկ Անանա յոգնական ։

վեշխարս սորայն, երկիցս անգամ ծունր կրկնեալ սըր-
բոյն Գրիգորի մեւք հանդերձ, և յարուցեալ տա-
րածեաց զձեռս իւր ընդ արևելս, և ասէ.

Տէր աստուած աստուածոց և տէր տէրանց, որ կատարես զկամս երկիւղածաց քոց, և ոչ անտես առնես զաղաչանս այնոցիկ՝ որ խնդրեն 'ի քէն. դու տէր, որ ահեցեր զսս և ածեր մինչև 'ի տեղիս յայս, ձգեա՛ զաջ քո 'ի վերայ տապանաց սոցա, և կնքեա անվթար զօրութ֊ քով զոսկերս սոցա, զի մի ոք կարասցէ հանել զսոսա աստի և գտանել մինչև յօր կատարածի աշխարհի և նորոգման սոցա և ամ֊ սրբոց։ Ողջապէս և 'ի սրբոց ոք ջանայցէ հանել, աղաչեմ մի լուիցես նոցա աղօթիցն. այլ որք յուսով և հաւատով խնդրեսցեն զբժշկութիւն 'ի դուռն սրբոյ Կարապետիս, բժշկեսցես զնոսա։ Բայց միայն թէ կամք քո իցեն թողուլ զնոսա 'ի ցաւս իւրեանց, զի տանջեալ մարմնով՝ ապրեսցին հոգւով 'ի հանդերձեալ դատաստանին։ Իսկ զդասս պաշտօնէից սորա պահեա, որ զդուշութ֊ ծառայեն քեզ և սրբութ֊ 'ի տէր եկեղեցւոջս. զի դու միայն ես կարող յամենայնի, և քեզ փառք յաւիտեանս։

Այս մեր ասացեալ զամէնն, եկն ձայն յերկնից որ ասէր. Եղիցի քեզ որպէս և կամիս, մի ոք գտցէ ըզդոսա հանելոյ պատճառս[1]. և որք ծառայեն ինձ տէր և անկեղծաւոր վարուք 'ի տեղւոջս, մասնակից լիցին դասին բարեացն։ Այս շարժեալ ծածկեցաւ տեղին։ Իսկ 'ի վաղւին ածեալ առաջի Սիւնեաց իշխանին քուրմն մի, աղաչէին՝ զծածկեալ տեղիս դանձուցն ցուցանել և զդրունս գետնափոր տանն. և ոչ ասաց, այլ մեռաւ 'ի նոյն կախաղանին։ Այս ոչ եղև հնար գտանել. թէպէտ և կարծէին ընդ հիմամբքն եկեղեցւոյն լինել, ուր Դեմետրեայ տաճարն էր։ Քանզի հիմն եկեղեցւոյն եդաւ 'ի նոյն տեղիս, նոյն չափովն լայնութիւնն և երկայնութիւնն. բայց միայն զի նոքա յարևմուտս երկրպագէին։ Այնպէս քննէին և զտաճարն Գիսանէին 'ի վեր բերել, որ էր ա-

1 Յերկուս օրինակս և Ձ ոչ գիտացի պատճառս ըստ հանելոյ նշխարաց։

յորդ աղբերն յարևելից կուսէ, որպէս երկուս քայլս մարդոյ հեռի գոլով, և ոչ գտին ։

Իբրև լցան նոցա անդ աւուրք ինն, երթեալ իշխանն Միհնեայ յաւանն Կուառս, հաւանեցոյց զզօրս գեղջն՝ գալ 'ի մկրտութի․ որք յանձն առին և եկին ընդ նմա ։ Եւ առեալ սրբոյն Գրիգորի իջուցանէ ըզնոսա 'ի ձորն Արծուեայ[1] և մկրտեաց զնոսա․ որ էր յարևելից կուսէ հանդէպ Կաձկոնից՝ Աստղոնից բերդին ։ Եւ մկրտեաց զնոսա քրիստոսադաւանդ օծմամբն, առնելով հաւատացեալս 'ի երրորդութեն ։ Եւ երևեցոյց տր լոյս մեծ 'ի սեան հրեղինի 'ի վերայ մկրտելոցն․ և կացեալ երիս ժամս լոյսն 'ի վերայ սխրալի քահանայագործութեանն, և անդէն ծածկեցաւ 'ի տեսողացն ։ Եւ որք մկրտեցանն էին, արք և մանկտի, ոգիք հինգ հազար և յիսուն ։ Եւ առեալ ածէ զնոսա 'ի տէրունական տաճարն, և տօն սրբոյ Կարապետին տայր կատարել որ օր մի էր նաւասարդի ։ Եւ տուեալ զնոսա 'ի ձեռս քահանայիցն, ետ տանել 'ի գեւղս իւրեանց ։ Եւ հրամայեաց քահանայիցն նշան փայտեայ կանգնել ուր զնշխարսն եգիտ, և 'ի մէջ գեղջն․ և զկանգնայսն անդ մկրտել ։ Իսկ եղև այս ամ, ժողովել տայր տրն Գրիգոր զմանկունս քրմացն և զպաշտօնեայս կռոցն, և աղաչէր զնոսա՝ դառնալ առ տր ած ։ Իսկ նոքա ոչ առնուին յանձն, այլ ասէին ցիշխանսն․ Ով այս բանս 'ի մեր առէք, որ թէ ապրիմք՝ փոխարէնս առնեմք ձեզ․ և թէ մեռանիմք, աստուածքն հատուցանեն զվրէժս մեր ։ Եւ լուեալ զայս իշխանն Անդեղ տանն, ետ տանել զնոսա 'ի Փայտակարան քաղաքն 'ի տուն բանտի առս չորեքհարիւր երեսուն և ութ՝ գերծեալ զգէս նոցա ։

Այլ և յոյժ զարմանալի էր տեսիլ նոցա, քանզի սևք էին և գիսաւորք և զազրատեսակք, զի ցեղով 'ի հնդկաց էին ։ Քանզի և կռոցն, որ յայս տեղոջ էին, պատճառն այս է ։ Դեմետր և Գիսանէ իշխանք էին հնդկաց, և եղբարք ցեղովք․ դաւ ինչ խորհեալ նոցա Դինասքեայ արքայն իւրեանց, զոր հրաշէկ ե-

1 Յօրինակի միում՝ 'ի յայն Եմանոս․ զոր և այլ օրինակ 'ի լուսանցսն յաւելու ։

զեալ արքային՝ առաքէ զօր զհետ նոցա, կամ սպանանել, կամ յերկրէն հալածական առնել: Իսկ նոցա լեալ մազապուր՝ անկան առ Թագաւորն Վաղարշակ. և նա ետ նոցա զերկիրն Տարօնոյ իշխանութիւն. զոր նոքեանք շինեցին քաղաք, և կոչեցին Վիշապ: Որք եկեալ յԱշտիշատ, և կանգնեցին ըզկուռսն զայնոսիկ յանուն կռոցն զոր 'ի Հնդկական պաշտէին: Այլ յետ հնգետասան ամի սպան Թագաւորն զերկոսեան եղբարսն, ոչ գիտեմ թէ վասն էր, և ետ զիշխանութիւն երից որդւոց նոցա Կուառայ և Մեղտեայ և Հոռենայ: Իսկ Կուառ շինեաց զաւանն Կուառս, և վասն անուան նորին կոչեցաւ Կուառս: Իսկ Մեղտէս շինեաց 'ի դաշտի անդ իւր աւանս, և կոչեաց զանուն նորա Մեղտի: Իսկ Հոռեանն շինեաց իւր աւան 'ի գաւառին Պալունեաց, և կոչեաց զանուն նորա Հոռեանս:

Այլ յետ ժամանակաց խորհուրդ 'ի մէջ առեալ Կուառ և Մեղտէս և Հոռեան, ելեալք 'ի լեառն Քարքեայ, և գտին զայն տեղին բարեհամ և գեղեցիկ. զի ընդարձակութիւն էր որսոց և հովասուն, խոտոյ և փայտի առատաձեռն. և շինեցին անդ դաստակերտս: Այլ կանգնեցին երկուս կուռս, զմինն յանուն Գիսանեայ, և զմիւսն յանուն Դեմետրեայ: Այլ ետուն նոցա 'ի սպասաւորութիւն զազգս իւրեանց: Գիսանէս զի գիսաւոր էր, և վասն այնորիկ նորա պաշտօնեայքն գէսս էին թողեալ. զոր հրամայեաց իշխանն հատել: Զի ազգն այն յորժամ 'ի Քս դարձան, չէին կատարեալ 'ի հաւատսն, և զհայրենի օրէնսն չիշխէին յայտնի ունել, այլ խաբէութեամբ զայս հնարեցան. ծամ միայն թողուլ 'ի գլուխ մանկանցն, զի զայն տեսեալ՝ յիշեսցեն զպաշտօն պղծութեան իւրեանց: Զոր և ես աղաչեմ զձեզ, զգոյշ կացէք՝ զի մի այս և 'ի ձերում երկիրդ սերմանեսցի, և մի լինիջիք ընդ անիծիւք: Այլ մեք յառաջինն դարձցուք 'ի կարգս և 'ի բանս:

Իբրև հիմնարկեաց սուրբն Գրիգոր զեկեղեցին, և եդ անդ զնշխարսն, և կանգնեաց անդ փայտեայ նշան տէրունական խաչին 'ի դուռն եկեղեցւոյն և 'ի տեղի կռոցն Գիսանեայ, և եթող անդ պաշտօնեայս ե-

կեղեցւոյն զՄնատն և զԿրօնիդէս ։ Եւ զԵպիփան հայր հաստատեաց վանաց ընդ ձեռամբ իւրով. և եթող ՚ի տեղւոջն արս կրօնաւորս քառասուն և երեք, և երկոտասան դասատակերտս եւ նմա, զի տեղեացն ծառայեսցեն ։ Յորոց մինն Կուասս, և Մեղտի և Որերի և Մուշ և Խորենի և Կեղք և Բուզու ։ Վասնզի աւանք են սոքա մեծամեծք, որպէս կայ ՚ի գրի իշխանացն մանկանց ։ Վասնզի Կուասս ունէր երդահամարս երեք հազար և երկոտասան, և հեծեալս հազար և հինգ հարեւր ։ Եւ Տում[1] ծուխս իննհարեւր, և հեծեալս չորեք հարեւր ։ Եւ Խորենի ունի ծուխս[2] հազար իննհարեւր և վեց. հեծեալս եւթնհարեւր[3], և հետեւակս հազար և եւթն ։ Իսկ Որերի[4] ծուխս հազար վեցհարեւր և ութսուն. հեծեալս հազար և երեսուն, և հետեւակս չորեք հարեւր[5] ։ Իսկ Կետեղք[6] երդս հազար և վեցհարիւր, և հեծեալս ութհարիւր, և հետեւակս վեցհարիւր ։ Իսկ Բուզու[7], որ թարգմանի քաղմաց կայեան, ծուխս երեքհազար և երկուհարիւր, և հեծեալս հազար և քառասուն, և հետեւակս աղեղնաւորս ութհարեւր և քառասուն[8], և տիգաւորս վեցհարեւր և ութսուն. և պարսաւորս երկերեւր և ութսուն ։ Եւ ընդարձակեալ ունէին սոքա իւրեանց խաշանց արօտականս զգաւառն Հաշտենից ։ Եւ այս աւանագեղք ՚ի ընծայ տուեալ էին կուոցն ՚ի ծառայութիւն, զոր և իշխանքն դարձեալ հաստատեցին ՚ի սէր եկեղեցւոյն յամս երեսուն և երկու թուով[9] ։ Զայս այսպէս կարգեալ է սրբոյն Գրիգորի ։

Եւ յետ երկոտասան աւուր երթեալ իջանէաք ՚ի քաղաքագեղն Մեղտի՝ և անդ երեկօթս արարեալ,

1 Յերկուս օրինակս Տամք. յայլում օրինակի Խորփում ։

2 Յերկուս օրինակս Եւ Խորփնի երդս հազար եւն. յայլում Խոհրնի ։

3 Յերիս օրինակս հազար եւթնհարեւր. յայլում հազար ութ ։

4 Յերկուս օրինակս Գորեխ երդս ։

5 Յերիս օրինակս հեծեալս ութ հարեւր, և հետեւակս վեցհարեւր ։

6 ՚Ի միում օրինակի Կետղէք. յայլ երեսն չէք ։

7 Յերկուս օրինակս Բաղում ։

8 Յերիս օրինակս հեծեալս երկու հազար և քառասուն, և հետեւակս աղեղնաւորս եւթնհարեւր և քառասուն ։

9 Յերիս օրինակս ՚Ի վերայ եկեղեցւոյն յամս և Ժ թուով. յայլում օրինակի յամս . և ՚ի միւս այլ յամս երեսուն և ութ ։

և 'ի մէջ գիշերին եկն այր մի, և գայժ էարկ՝ եթէ արք հիւսիսոյ գան 'ի վերայ մեր: Իսկ մեք դէմ եդեալ կամէաք անցանել յայնկոյս գետոյն յամրոց մի կոչեցեալ Թարձենք[1]: Այլ իշխանքն անցեալ գնացին մինչև 'ի դուռն Մուշ քաղաքին, և տեղեկացեալ զի ոչ ինչ գոյր, և ապա դարձան և եկին ընդ առաջ մեր. և դարձուցեալ զմեզ յեզերացն Արածանւոյ, ոմանք անցեալ մտին 'ի քաղաքն յառաջագոյն, իսկ ոմանք ընդ մեզ երթային: Իբրև հեռացաք 'ի գետոյն իբր ձիոյ արշաւանօք երկու կամ երեք, և իբրև մերձեցաք առ փոքր ձորակին, և կամէաք անցանել միաբան և գնալ 'ի տեղի մեհենիցն, քանզի անդ իսկ էր խորհեալ գնել զմնացեալ նշխարսն, ապա Չորիք կառացն յայնկոյս ձորոյն ոչ կարացին անցանել, և նստան: Ապա հրեշտակն յայտնեալ՝ արգել զԳրիգորիոս, և ասէ. Հաճեցաւ տր սրբոցդ բնակել 'ի տեղւոջս յայս, և այն՝ վասն ցուցանելոյ 'ի հեռագոյն տեղեաց անդի զզօրութիւն տնյ, զոր տեսեալ մարդկան՝ հաւատասցեն աքանչելեացն. Բաց զայս այլ պատճառս 'ի սրբոյն Գրիգորէ ոչ լուաք:

Այլ անդ ձեռն 'ի գործ արկեալ շինուածոյ եկեղեցւոյն, և նոյն օրինակաւ 'ի գիշերի կազմեցաք զտեղի նշխարացն. և եդաք 'ի քարեայ տապանս առնաչափ[2] զերկուց վկայիցն մերձ առ դուռն եկեղեցւոյն յաջակողմն: Այլ զմիւս ևս զակնն լուսաւոր դնէր 'ի նոյն տապանին, յաղագս միշտ լուսոյն զոր ունէր: Բայց զորս եդն, այս են. զԱթանագինէին զհասարակն, և զԿարապետին զոսկերս բարձուցն ձախոյ, և զերկու սրունսն, և զմասն ինչ ոսկերաց ողինն: Իսկ զայլն 'ի Կեսարիա առին իւրեանց մասն, զերկուս ոտսն և զահեակ բոյթն: Որդ իբրև եդաք 'ի ներս 'ի տապանսն զնշխարսն նոյնչափ խորուք որպէս յինն ակնեան տեղին, և ծունր կրկնեալ սրբոյն Գրիգորի մեւք հանդերձ, զնոյն աղօթս մատուցանէր առ ած, զի մի ոք յանդգնեսցի առ 'ի հանել զնոսա: Այլ նոյնպէս եկն ձայն յերկնից, եթէ զոր ինչ խնդրեցեր՝ եղիցի,

1 Յօրինակի միում Հոլէանք:
2 Յերկուս օրինակս 'ի տաբեղին փաղանի տաանջինն:

և ոչ ոք կարէ գտանել զդուռն ։ Այս զայս ասացեալ խաղաղացաւ տեղին 'ի մէնջ. և յայտնի է նշանաւ բևեռով փափագողացն իւրքն ։

Արդ որ զհետ այսոցիկ է՝ զայն Թողաք այլոց պատմագրի, մինչև դարձեալ կրկին դառնայ պատմութիւն 'ի Տարօն. զի որպէս զայլ տեղեացն չեմ ինչ գրեալ, նոյնպէս և զիմն չիշխէ ոք գրել[1]. զի Թագաւորաց ժամանակագիրք են ։

Այս պատճէն առաջին պատերազմին Արձանին, և որ ինչ գործեցաւ յաւուրս իմ ։

1 Յերկուս օրինակս չի որպէս զայլ տեղեաց չեմ ինչ գրեալ 'ի Տարօն, նոյնպէս և այլքն զիս չիշխէ ։

## ՊԱՏՃԷՆ ԵՐԿՐՈՐԴ

### ՎԱՍՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՆ ՈՐ ՅԱՐՁԱՆՆ ԵՂԵՒ

'Ի ԺԱՄԱՆԱԿՍ յայնոսիկ լուր եհաս 'ի դուռն արքային՝ թէ Կոստանդիանոս կայսրն հաւատաց 'ի Ք՟ս ա՟ծ, և դադարեցոյց զհալածումն եկեղեցեաց, քաջութ՟բ կալեալ զթագաւորութիւնն: Ապա խորհուրդ 'ի մէջ առեալ՝ գնալ 'ի դուռն կայսեր. վասն դնելոյ դաշինս խաղաղութեան 'ի միջի իւրեանց, եկին հասին 'ի գաւառն Ապահունեաց 'ի քաղաքագեղն Մանծկերտ[1]: Արքայն Հիւսիսոյ զօրս գումարեալ, եկն 'ի վերայ իշխանին Վրաց. և զնա փախըստական արարեալ, բերին մինչև 'ի Կարնոյ քաղաք: Եւ զերկիրն գերի վարեալ, տարան ոգիս իբրև քառասուն և ութ հազար: Իբրև եկն պատգամաւորն Վրաց իշխանին առ թագաւորն Տրդատ, և խնդրեալ իւր զօր յօգնականութիւն՝ զի մի՛ տացէ զերկիրն տանել, և թագաւորն Տրդատ տուեալ երեսուն հազար արանց 'ի ձեռն իշխանին Ապահունեաց, և արձակեաց յօգնականութ՟ն Վրաց իշխանին: Որք երթեալ ամսօրեայ ժամանակս յամեցին. և սակաւ մի գերութ՟ն դարձուցին. և երեք իշխան ըմբռնեցին և ածին: Եւ կողմնապահ թողեալ երկրին, և ինքեանք դարձան առ թագաւորն:

Իսկ իմ աղաչեալ զմեծն Գրիգոր գնալ 'ի վանսն իմ, զոր ինքն հիմնարկեաց յանուն Ս՟բ Կարապետին. զի կայր լոկ միայն հիմնարկեալ: Որ թագաւորն իսկ յանձին կալեալ գալ 'ի տեսութ՟ն տեղեացն՝ զոր հիմնարկեաց, և ելեալ յԱշտից[2] տեղեացն թագաւորն ընդ լեռնակողմն գնայր: Վասնզի ոմանք տեսեալ զզօրսն Յունաց, համբաւեցին՝ թէ իշխանքն Հիւսիսոյ թա-

1 Յերկուս օրինակս Մանազկերտ:

2 Յերկուս օրինակս 'ի Դաշտից փեղէոցն:

գաւուրին ծանր զօրօք գան 'ի վերայ · քանզի Տրդատ բազում գաւառս և քաղաքս էր մնոցա քանդեալ , և վաթսուն հազար արս 'ի գերութիւն խլուցեալ 'ի Պոնտոս ։ Արդ և տեղեկացաւ՝ թէ Յունաց զօրքն էին, դարձաւ 'ի գաւառն Հաշտենից · և անդ բանակեցաւ 'ի գլուխ Արձանին վասն ընդարձակութեան վայրուցն ։

Արդ եկեալ 'ի տեղին Խնձաձորեան թագաւորաւն համդերձ, խնդիր արարեալ Անտոնի և Կրոնիդեայ ։ Իսկ պաշտօնեայքն ասեն · Այս ամ մի է , սակայն խնչ պակաս , մեք զնոսա չեմք տեսեալ ։ Եւ տրտմեցաւ յոյժ թագաւորն , զի 'ի վաղնջուց ցանկայր տեսանել զնոսա ։ Իսկ սուրբն Գրիգոր առաքեաց խնդրակս զԱղբիանոս եպիսկոպոս համդերձ երկու սարկաւագօք , պատուէր տուեալ նմա՝ եթէ ընդ առաւօտն ելանեն յանտառէն 'ի բլուրս ուրեք , և դու անդ կաց զգոյշ , զի մի զերծ տեսցեն և փախիցեն ։ Եւ զաւուրս չորս ոչ կարացին զտեսանել · իսկ 'ի լուսանալ հինգերորդին առաւօտուն՝ լուան զձայն սաղմոսերգութեան նոցա , զի դայլին յանտառէն յարևմտից կուսէ 'ի քաղցրահամ աղբերէն ։ Եւ եկեալ 'ի բլուրն արևելեան 'ի տեղիս արարոցն Պետեարեայ , զոր կոչեմք Արևու բլուր [1] · զի և անդ իսկ էին դարափորք խուցք [2] նոցա , 'ի կողմանէ արևելից · և իբրև մերձեցան 'ի վերայ աղբերն , սկսան սաղմոսել այսպէս · “ Լսելի արա ինձ, Տէր , առաւօտու զողորմութիւն քո ”։ Իսկ Աղբիանոս ասէ · “ Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ”։ Եւ աղօթեալ անդ , ասէ Անտոն ցԱղբիանոս · Բարի եկիր ճանապարհորդ խաղաղութեան ։ Եւ նա ասէ · Բարւոք գտաք զձեզ օթեվանք սրբոյ Հոգւոյն , և ճրագք լուսոյ ։ Այլ և ասեմք ձեզ , զի սուրբն Գրիգոր և Տրդատ թագաւորն 'ի խնդրութիւն ձեր են եկեալ , և յոյժ խնդրեն զձեզ ։ Իսկ նոքա ասեն · Եւ ձեզ ասեմք , զի սատանայ կործանեցաւ , և Տէր այսօր կրկին ուրախութեամբ լցոյց զարարածս իջմամբ սրբոյ Հոգւոյն ։ Եւ կոչեցաւ տեղին այն Աւետեաց բլուր ։ Եւ առաքեաց Աղբիանոս առ մեզ զերկուս սարկաւագսն աւետա-

1 Յերկուս օրինակս Արևոյ բլուր ։

2 Յերիս օրինակս դարափորք խորոց նոցա ։

ւորս ․ զոր լուեալ մեր , յոյժ ուրախ եղաք ։ Այլ դարձեալ զնոյն սարկաւագունսն առաքեաց նմա Գրիգոր աւետաւորս առ Տրդատ 'ի սահման Արձանեն ․ որ յոյժ խնդութեամբ լցեալ , եկն 'ի վանսն համադերձ գլխաւոր իշխանօքն ։ Իսկ 'ի տեղին , ուր զաւետիսն եառուն , հրամայեաց վէմս ժողովել բլրաձեւս , և կանգնեաց անդ նշան խաչի ․ զոր և կոչեմք Աւետեաց խաչ [1] ։

Այլ առեալ որդւոյն Գրիգորի զդասս պաշտօնէիցն , և զնշան տէրունականն խաչին , համադերձ ջահիւք և անուշահոտութեամբ խնկոց և պաշտամամբք ․ որ և ձայն ուրախութե պաշտօնէիցն զանտառն հնչեցուցանէր ։ Այլ մերձեալ 'ի բլուրն , ընդ առաջ եղեն մեզ ․ և միաբան 'ի բլուրն ելեալ աղօթեցաք ։ Այլ յետ աղջունին , ասէ սուրբն Գրիգոր ․ Արկէք զտաք զձեզ առաւօտք խաղաղութեան ։ Իսկ նոքա ասեն ․ Արդէ եկիր առաւօտակդ արդարութե , որ զտխեղերս լուսաւորես ․ մշակ առանց ամօթոյ , և աշտարակ բարձրագոյն քան զերկինս ։ Այլ բազում անգամ համբուրեալ զմիմեանս , և առեալ զնոսա՝ գայաք յեկեղեցին ․ զի ոչ էր բլուրն հեռի 'ի տեղւոյն , այլ սակամի 'ի բացեայ 'ի հիւսիսոյ կողմանէն , և խիւքն հայի ընդ արևելս , բարեհամ և դիտանոց երևակ բազում վայրուց ։ Իբրև ածաք զնոսա առ Թագաւորն , և նա արտասուելով՝ աղօթէր օրհնիլ 'ի նոցանէ ․ և յարուցեալ համբուրեաց զնոսա , և նստան առաջի վկայարանին ։ Այլ բազում վարդապետութի խօսէին ընդ նոսա , և ուսուցանէին զսրբութե կրօնս ։ Այլ կացեալ անդ աւուրս հնգետասան , Թագաւորն 'ի նոյն տեղին կանգնէր զտէրունեան նշան մեծանիստ քարակոփ ; 'ի տեղի տաճարին՝ ուր Դիւանեանն էր , առաջի աղբերին՝ ուր զբժշկութիւն հիւանդացն կատարէր ։ Այլ յորժամ կանգնեաց զնշ խաչն , տօն ուրախութե կատարեցին ․ և ամ բազմութի ժողովրդոցն , որք կուտեցան 'ի տեղեաց տեղեաց , եղեն թուով արք հարեւր հազար չորեքհարեւր և յիսուն ։ Թող զզօրս թագաւորին և զպաշտօնեայս սրբոյն Գրիգորի ․ քանզի թագաւորն հրամայեաց թուել , և զթիւն 'ի բուն խա-

1 Յերկու օրինակս աւետեաց խաղ ։

չին եւս գրել, զի լիցի վկայ ազգաց անցելոց յետ ժամանակաց :

Այլ իբրեւ կատարեցին զպաշտօն աւուրցն, եկին հասին զօրքն՝ որ 'ի Միրս էին՝ առ Թագաւորն, եւ ածին ընդ ինքեանս երիս իշխանս եւ չորեքհարեւր այր ընտիր։ Զոր տեսեալ Թագաւորն, ուրախ եղեւ յոյժ, եւ գոհացաւ զԱյ՝ որ ետ 'ի ձեռս իւր զթշնամիսն իւր. եւ առեալ զնոսա արձակեաց կապեալս յամուրն Ողկան։ Այլ ինքեանք յառաջեալ գնացին, բազում աւուրց օթեւանօք զանց առնէին, մինչեւ հասին 'ի Հռամ քաղաք. եւ անդ կացեալ սակաւ աւուրս, դարձան մեծաշուք պատուով։ Այլ բազում ուրախութ՟ գային հասանէին յԱյծեղեաց գաւառն, 'ի Թփին աւանն. եւ յետ երից աւուրց ելեալ անտի, գային հասանէին ընդ գաւառն Պալունեաց. եւ երկուս աւուրս մնացին 'ի մեծ աւանն Հոռեանս։ Այլ անտի ելին եկին 'ի գեւղն Կուառս. եւ քանզի աշխատեալք էին, հանգիստ առնէին այն օր։

Արդ յորժամ գնացին զօրքն 'ի Միրոն, եւ դարձուցին զգերիսն, եւ զերիս իշխանսն եդին յՈղկան զորս ածին ընդ իւրեանս կապեալս, եւ ինքեանք թողեալ կողմնապահ զիշխանն Աղձնեաց չորեք հազար արամբ[1]։ Իսկ նորա կաշառեալ 'ի Թագաւորէն Հիւսիսոյ, առեալ 'ի նմանէ վաթսուն հազար դահեկան, եւ գնաց ինքն յերկիրն Ապահունեաց. զի ամ ջան նենգութեն վասն Թագաւորին ունելոյ էր։ Զոր ոչ իմացաւ Տրդատ վասն թշնամանացն. եւ նա զորս փախըստականս ըմբռնէր, կապել տայր եւ 'ի բանտին արկանել։ Այլ այնչափ հմտութ՟ եկեալ եւ դիտակօք, որ եւ զԹագաւորն 'ի նեղուց տեղ թակարդեալ։

Բայց առ Թագաւորն Տրդատ զօրք որ կային՝ երեստուն հազար միայն էին. եւ այլն ամենայն երթեալ էին 'ի Մուշն աւանն։ Արդ 'ի հասարակել գիշերոյն, մինչ մեք զպաշտօնն մատուցանէաք առաջի նշ՟ք խաչին, զոր եւ կանգնեաց հրամանաւ սրբոյն Գրիգորի իշխանն Սիւնեաց. զի մինչ Տրդատ զինանկնեանն

1 Յերիս օրինակս ընդ իշխանն Աղձ. դրակաւ նշանակեալ 'ի համառօտ նշանաց Դրօշ անուան. որ երեւի մեծ- գոյութիւն չորեք հազարին ոՃ :

խաչն կանգնեաց, իշխանն Անգեղ տան զՀռուենիցն կանգնեաց, և Սիւնեացն զԱլուառացն. և Տէրն Գրիգոր երթեալ զխաչն օրհնել, և յերկու աւանսն հիմն եկեղեցւոյ արկանէր: Նորա 'ի նոյն աւանին 'ի գիշերին պաշտամանն, մինչ դեռ զօրհնութիւն երից մանկանցն կատարէաք և Թագաւորն առ մեզ էր. ահա իշխանքն 'ի յաղօթել, և չունէաք բնաւ իրացն կասկած, յանկարծակի ձայն աչեղ իբրև ամպոց՝ որ յոյժ. դղրդէ՝ եկն եհաս 'ի վերայ մեր: Զի զվարին կողմ գեղջն պաշարեցին հետևակքն, և զներքինն հեծեալքն: Եւ սկսան հնչեցուցանել զփողս պատերազմաց, և Թնդիւն սաստիկ շուրջանակի, և զձիոց վրնջիւնսն էր լսել:

Եւ սկսան իշխանքն մեր ելանել ընդդէմ նոցա 'ի պատերազմ. քանզի միջօրեայ էր լուսնին: Բայց 'ի պատերազմէն արգել զնոսա Տրդատ. Նա, ասէ, գիշեր է. և մեք ոչ գիտեմք զչափ զօրուն, թէ որչափ է համար զօրուդ. այլ թէ իմաստութ̅ կամիք առնել, ելէք վեցհազար այր 'ի մէջ այգեստանեացդ 'ի գլուխ Արձանին թագիք մինչև ցառաւօտն, և չորեքհազար 'ի Հաշտենից կողմանդ, և չորեքհազար ընդ մէջ նոցա անցեալ զնստցեն առ այգեստանեօքն 'ի վերին գահն, և մեզ ուշ կալցեն: Բայց տեսէք զի մի զձեզ տեսցեն, և նենգութ̅ 'ի փախուստ դարձցին, և 'ի մէջ առեալ՝ վտանգեսջիք [illegible]ւ բաժանեալ արձակեաց զնոսա ուր և խորհեցաւ:

Բայց Թագաւորն և Գրիգոր մեւք հանդերձ 'ի փոքր ամրոցին կայաք և աղօթէաք: Եւ մի ոմն 'ի զօրացն Սիւնեաց պատանի մի ըմբռնեաց 'ի հիւսիսականացն, և էած առ Թագաւորն: Եւ իբրև տեղեկացաւ եթէ 'ի քո զօրացդ և իշխանացդ է իրքդ, և այս է Թագաւորն հիւսիսի Գեդուեհոն, և վասն ունելոյ զքեզ եկեալ է յիսուն և ութ հազարաւ, և հրամայեաց զօրացն պատրաստել զյետին աւուրն մահու պատերազմ: Եւ իբրև առաւօտ եղև, զօրքն սկսան կազմել փողոյս Թագաւորին՝ զի յԱրձանն ելցէ: Իսկ Թագաւորն հիւսիսոյ հրամայեաց զօրացն զառաջս ունել. վեց հազար սպառազինօք արգելուլ կամէր զԹագաւորն Տրդատ: Որոց եկեալ յառաջնն,

արգելուլին զնա 'ի գլուխ Արձանին. և զհագուլմ ժամն ոչ կարացին ելանել 'ի վեր։ Զոր տեսեալ սուրբ այն Գրիգորի, յարտասուս եղեալ, և ձայն բարձեալ՝ ասէ. Մկրտիչ և Կարապետ Քրիստոսի, տես զինչ գործեն. և հասիր յօգնութիւն, և տուր զայս որ նշանաւոր յազգս։ Եւ առեալ զնշխարս առաքելոյն՝ զոր բերեալ էր 'ի Հռոմայեցւոցն, տեառնագրեաց 'ի վերայ Թշնամեացն։ Եւ առժամայն այծ տուեալ Տրդատայ, քաջառնաբար ձայն բարձեալ՝ յօգնականութիւն կոչելով զՍբ Կարապետն, և կոտորեաց զաւագն առաջապահիցն[1], և ել 'ի վերայ բլերն։ Եւ որք 'ի գլխերին Թագուցեալ էին, յարուցեալ 'ի մէջ առին զայն զօրն, և փախստական արարեալ խջուցին զնոսա ընդ հարուածովն յանտառն. և որպէս 'ի Թակարթ արկեալ, սուր 'ի վերայ եդեալ՝ կոտորեցին. և անուանեցաւ տեղին այն Թակարթ։

Իսկ զօրն Հիւսիսի որպէս դիպող ժամանակ գտեալ, յարձակեցան 'ի վերայ գեղջն. և դեռ հանէին զմեզ յամրոցէն։ Զորս[2] տեսեալ չորեքհազար արանցն, որ 'ի վերայ գեղջն կային, յարձակեալ 'ի վերայ՝ փախստական արարին զնոսա 'ի ներքոյ գեղջն։ Զոր և ոմանք յայգորդացն գլաջարդ առնէին զձակատ երիվարացն, և ոմանք 'ի հեծելոցն 'ի վիմաց անտի մեռան։

Իսկ զօրք մեր ցրուեալ զնոսա ընդ այգեմէջսն, սակաւք փրծան. և անկան 'ի տեղոջն յայնմիկ վեցհարեւր այր 'ի Թակարթն. իսկ երկու հազար եւթն հարեւր այր, և զօրս պարսատօքն[3] կոտորեցին, ութ հարեւր վեց. և ընդ ամենայն՝ չորեքհազար երկու հարեւր. և երկոտասան այր։

Եւ ապա դարձեալ Թագաւորն 'ի փոքր կոտորածէն, ել 'ի գլուխ Արձանին. և հարեալ զազդարար փողն, մինչև ամ զօրքն ժողովեցան 'ի մի վայր։ Եւ իբրև եկին հասին 'ի տեղին, և զսրբն Գրիգոր իջուցին յանդաստան, և պահէին զնա արք վեցհարեւր։ Իսկ Թագաւորն Հիւսիսոյ առեալ զզօրսն իւր, գնաց 'ի Հաշտենից տափարակին. և առաքեաց Թուղթ առ

1 Յերկս օրինակս առաջապահիցն։

2 Յերկուս օրինակս ոչ գտանի։

3 Յերկուս օրինակս պարսաւորք։

Տրդատ՝ թէ եկ 'ի վաղիւն տացուք պատերազմ, և և եղիցի որ յաւիտենական 'ի մէջ երկոցունցս. կամ տացես զիշխանանս իմ յիս, և հարկս հնգետասան ամաւրոյ. ապա թէ ոչ, քանդեմ զերկիրդ քո սրով և գերութիւն և մահուամբ, որպէս զի ծանիցես զզէնս խաղութեան քո՝ որ եղեր առաջի զօրաց քոց. արդ ըստ այդմ արա զպատասխանիսդ։ Նա ընթերցեալ զթուղթն, ոչ արար նմա պատասխանի. այլ յարուցեալ գնաց երեսուն հազար արամբք 'ի պատերազմ, և փրթեալ յանդիման նոցա իջաւանեցաւ 'ի Մուշեղամարգն Հաշտենից։ Նա 'ի վաղիւն սկսան ռազմ գործել և ճակատ յօրինել. և փողոցս թողեալ պատերազմին դրունս երկու, և դռնապահս տեղեացն զԲագրատունեացն իշխանին կացուցանէր։ Իսկ զաջ թեւն զօրուն տայր 'ի ձեռն իշխանին Սիւնեաց, և զահեակ թեւն 'ի ձեռն իշխանին Անգեղ տան։ Իսկ ըզդահերէց իշխանսն կացոյց թիկնապահս իւր. և այնպէս յօրինեցան երկոքին ճակատքն, և պատրաստեցան 'ի խումբն։

Իսկ իբրև ՞ամ զօրքն սկսան ընդդէմ իրերաց անցանել, ձայն բարձեալ արքայն հիւսիսոյ ասէ. Ո՛վ քաջ Հայոց, ինձ մատիր։ Նա իբրև եկին ընդդէմ իրերաց, սկսան իբրև զմրճաւորս քարահատաց, կամ իբրև զուռնածս՝[1] որք պատեն զշանթս հրայրեացս, մինն առնոյր և միւսն իջուցանէր։ Քանզի արքայն հիւսիսոյ մեծահասակ էր և կորովի իբրև զՏրդատ. և բազում կոփեալ միմեանց, ոչ ինչ եղև։ Բայց սկսաւ պակասել արքայն հիւսիսոյ. և գիտացեալ եթէ մեռանելոց եմ, և քանզի ճօպանաւոր էր՝ անճապարեաց և ձգեաց զճօպանն, և արգել զաջ թեւն ընդ պարանոցն. և փութանակի դարձաւ և կղթեաց զճօպանն[2], մինչ զի և չկարաց ընաւ շարժել զձեռն Տրդատ։

Նա մորակեալ զկուշտ երիվարին զկնի Գնդաեհոնին, այնպէս փութացեալ մինչ զի ոչ ետ քայլել նմա առաջի իւր տասն քայլ։ Իբրև եհաս նմա, ասէ. Կատաղի շուն, խառնեցեր զկնի քո ջլացդ։ Նա ամ-

1 Ցերիս օրինակս իբրև զսատաւորս մինն առնոյր եւ [illegible]

2 Ցերիս օրինակս դարձաւ 'ի կըրթել զճօպանն։

բարձեալ զաջ ձեռն իւր 'ի վեր, իջուցանէր զսու-սերն 'ի վերայ ձախոյ Թիկանն Պետղաւէհանի. և ան-ցուցեալ ընդ գօտին, և զոտն երիվարին հանդերձ գլխովն բաժանեալ՝ յերկիր ձգեաց: Այս այն էր զար-մանալի, զի գլուխն և աջ ձեռնն և աջ ոտն ընդ մի-մեանս, և ոտն երիվարին ընդ մէջ հերձեալ Թաւա-լէին: Որ իբրև ետես իշխանն Մուղեղ տանն 'ի վե-րայ անկեալ զահեակ Թևն, և ձայն տուեալ ասէր. Իշխանն Միհնեաց, 'ի մէջ ած զգունդս այծուցդ, զի անկաւ Հոռոմն քօշն: Իսկ նա ընդ մէջ անկեալ, եհատ զզօրսն. և անցեալ յաջ Թևապետն հեծելոյ, ասէ. Մարեղահաճ[1], խնձ մնացիր և մեռանմարտեսցուք: Այս մնացեալն իւրեաց. և աճապարեաց հեծելոյծն, և կտրեաց զգլուխ երիվարին Միհնեաց իշխանին: Իսկ նորա անկեալ զաւուրն, և եհատ զառաջին ոտսն երի-վարին հեծելոյծոյ. և երկոքեան զոյգ 'ի վայր ան-կան, և բուռն[2] հարեալ զմիմեանց: Իսկ մի ոմն 'ի ծառայից Միհնեաց իշխանին մօտն տուեալ, ընկեց զոմն 'ի վայր յերիվարէն. մատուցանէր նմա, ասելով. Արի, տէր, և հեծիր: Այս աճապարեալ նստաւ 'ի վե-րայ նորա. և դարձեալ՝ կտրեաց զգլուխ նորա, ձգեալ 'ի Մախաղն, և դարձաւ: Այս իբրև ետես իշխանն Մու-ղեղ տանն զերթն՝ որ եղև, և զզօրսն զի փախստականս դարձուցին, ապա ձեռն 'ի գործ արկեալ՝ բախեցին զպա-տերազմունսն ընդ իրեարս[3]. զոր և Թագաւորին ըղ-հետ մտեալ մինչև 'ի մուտս արեգականն, յանխնայ կոտորեաց որք դիմադարձն գտան: Այս իբրև 'ի նուրբ տեղիսն դիմեալք, օԹեվանս խնդրէին առնել առ ե-զեր գետոյն փոքեր՝ որ անցանէր ընդ գաւառն Հաշ-տենից, ուր երԹայ ընդ արևելս հիւսիսախառն, և բանակեցան նոքա յայնմ կողմանէն, և սոքա յայսմ կողմանէ: Այս իբրև այգն զառաւօտն մերկանայր, պատրաստեցան մնացեալ զօրքն հիւսիսականացն, և յարձակեցան 'ի վերայ զօրացն Հայոց, և սկսան

1 Յերկուս օրինակս Աստեղա-հաճ. յառաջ ձայնէր. 'ի միում օրի-նակի Աստեղահաճ: Յերիս օրինակս պակասէր և ձայնէն Էլէլոյ. և յերկուս օրինակս փոխանակ այնր պակասէր և մեռանմարտեսցուք:

2 Յերկուս օրինակս բուռն բուռն զմիմեանց հարին:

3 'Ի միում ևեԹ օրինակի առ իրեարս:

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՄԱՄԻԿՈՆԵԱՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՏԱՐՕՆՈՅ





Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1832 ՌՄՁԱ

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Յովհան Մամիկոնեան եպիսկոպոս յաւուրս Ներսեսի Հայրապետի Շինողին կացեալ, հրամանաւ նորա գրեաց զգիրս զայս։ Յորում պատմէ զպատերազմունս տանն Մամիկոնեանց ընդ Պարսս, և զՄուշեղայ և զՎայլ Վահանայ, այլովքն հանդերձ. որ ինչ յաւուրս Խոսրովու երկրորդի Պարսից արքայի յերկրին Տարօնոյ գործեցան։ Նաև որ ինչ իրք 'ի Տրդատայ մինչև ցԽոսրով լեալ են, զոր մատենագիրս 'ի յիշատակարանին իւրում աւանդէ գտեալ 'ի կողմանս Եդեսիայ և Թարգմանեալ, չերևին 'ի միջի։

Ընդօտին 'ի նոցունց օրինակաց գրոցն Զենոբայ և տպագիրս այս արարաւ. առ որ ցանկալի էր մեզ ընտրելագոյն օրինակս 'ի ձեռին ունել։ Զի առաւել ևս 'ի սմա գտանին փոփոխմունք և յաւելուածք. որք եթէ ոչ 'ի գրչագրաց իցեն յետոյ կըրճատեալ, ինքն իսկ արդեւք մատենագիրն, կամ յետ նորա Գլակայ վանիցն առաջնորդք յաւելլին զայսս ըստ նորին յորդորանացն՝ զոր 'ի յիշատակարանին իւ-

րում առնէ ։ Զի « որք զկնի դոցա, ասէ, այլք նըս-
տին վանականք, զոր ինչ գործի յաւուրս նոցա 'ի
տանս յայսմիկ՝ դիցէ 'ի նոյն մատեանս » ։ Արդ մեր
հնգեցունց օրինակաց բաղդատութեամբ՝ անթերի
զմնացորդս յերկուրեալ, թողումք այլում տեղւոյ քըն-
նել, որ ինչ 'ի սմա ըստ ժամանակագրութե՛ մասին
տեսանին անստուգութի՛ք, և զպատճառս նոցին հետա-
զօտեալ հոլանել ։

# ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ՄԱՄԻԿՈՆԵՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՏԱՐՕՆՈՅ

---

## ԳԼՈՒԽ Ա.

*Եթէ ո՛յք են, որ յաջորդեցին յառաջնորդութիւն սր̃ Կարապետին, որ կոչի Գլակայ վանք ։*

ԶԵՆՈԲ եկաց հայր վանացն Գլակայ ամս քսան ։

Յետ նորա Եպիփան աշակերտն Անտոնի ամս երեսուն ։ Ի սորա տասն ամին եկն սուրբն Գրիգոր ՚ի Գլակայ վանսն, եկաց յԻննակեանց բլուրն առ Անտոն և Կրօնիդէս չորս ամիս ։ Եւ նոքա հանեալ զնա անտի առելով. Գնա յանապատ յանմարդաբնակ տեղիս, զի մի՛ ոք փառաւորութիւն մատուցանէ քում սրբութեանդ ։ Իսկ նորա գնացեալ ՚ի Մանեայ այրսն, և կացեալ անդ ամս եւթն, վախճանի ՚ի կենացս ՚ի փառս այ̃ ։

Մ[illegible]անոս աշակերտ նորա ամս հնգետասան[1] ։ Ի սորա չորրորդ ամին վախճանեցաւ տէրն Անտոն. և յետ երկուց ամաց և տէրն Կրօնիդէս, կացեալ ամս քառասուն յԻննակնեան տեղիս. և է սակաւ ին[illegible] ուադոյն թաղեալ յեկեղեցւոյն ըստ հարաւոյ կ[illegible] Սա շինեաց եկեղեցի, ուր սուրբն Գրիգոր զնշխ[illegible] պահեաց յայն կոյս Կուառայ, առ յորդաբուղխ աղ-

1 Յերկուս օրինակս ամենափան ։

բերն. և կացոյց անդ կրօնաւորս վաթսուն հրեշտա-կային վարուք։

Եփրեմ ամս քսանեւութ։

Յովհաննէս ամս տասն [1]. սա էր 'ի ժամանակս սրբոյն Սահակայ։

Գ իմինդոս ամս տասն։

Մարկոս ամս ութեւտասն [2]։

Կիւրեղ ամս քսան և երկու։ Սա առաջին եպիս-կոպոս ձեռնադրեցաւ 'ի Մանդակունւոյն Յովհան-նէ Հայոց կաթողիկոսէ։

Գրիգոր ամս վեց։

Անդրէաս ամս մետասան [3]։

Ներսէս ամս եօթն [4]։

Յովհաննէս ամս երիս [5]։

Սահակ ամս հինգ [6]։

Յովսէփ ամս վեց։

Բարթողիմէոս ամս չորս [7]։

Աթանաս ամս տասն [8]։ Սա էր, որ 'ի ժամանակս Մովսէսի Հայոց կաթողիկոսի զթուականն գրեաց հրամանաւ նորին 'ի Դուին քաղաքի. զի նա էր աւ-ղեակ տումարի ա̃մ ազգաց։

Կոմիտաս ամս ութ [9]։ Սա գնաց միաւորել յԱբ-րահամէ Հայոց կաթողիկոսէ առ Վրաց կաթու-ղիկոսն։

Աստեփաննոս ամս վեց։ Սա 'ի ժամանակս Կոմի-տասայ Հայոց կաթողիկոսի գնաց առ նա, և եբեր մասն ինչ 'ի սրբոց Հռիփսիմեանց, և եդ 'ի Գլակայ վանքն՝ ուր ինքն իսկ էր։ Բանզի Կոմիտաս վերըս-տին շինեաց զվկայարան սրբոց Հռիփսիմեանցն։

Բարսեղ [10] ամս ութ։

Թադէոս [11] ամս երեսուն։ Սա 'ի տղայութէ սնաւ-ցաւ զառաքինութի. և էր աշակերտ Բարսղի, որ եղև նմա սիրելի վասն վարուց իւրոց, և իշխանքն Մամիկոնենից Մուշեղայ. և իշխանն բազմացոյց սմա

1 Յերկուս օրինակս յիսուն։
2 Յերկուս օրինակս Մակար ամս երեքտասան։
3 Յերկուս օրինակս ութ։ 4 հինգ։ 5 երկու։ 6 եօթն։ 7 երիս։ 8 վեշտասան։ 9 տասն։
10 Յերիս օրինակս Բարթողիմէոս։
11 Յերկուս օրինակս Թադէի ա̃է և ճգնաւոր։

դաստակերտս քաղաքս ։ Այս քաղաքս կրօնաւորս կարգեաց 'ի Գլակայ վանսն միաձաշակս և ձգնաւորս՝ առանձինս բնակել, անձինս երեք հարեւր ութսուն և ութ ։

Արդ 'ի սորա ժամանակս եկին արք չորք 'ի կողմանցն Յունաց, արք ձգնաւորք և խոտաճարակք, որոշեալք յամ մարմնական հեշտութեց, որք կամէին անցանել ընդ Սուկաւ ։ Իբրև եկին 'ի տեղին յայն, հաճեցան բնակել յանապատ. և կացեալ ամս երկու, լուան ոմանք 'ի կողմանցն Սազաստանայ արք երեք. և եկեալ 'ի նոյն տեղին Գլակայ, և հանդիպեալ միմեանց՝ դադարեցին 'ի միում վայրի ։ Ոմանք յիննակնեան վայրսն, յԱշտեաց բլուրն. և ոմանք 'ի քարայրին, որ 'ի հարաւակողմն արեւելեան է, 'ի Թագուածի խաչի կողմանն. իսկ ոմանք 'ի կողմանց անտառաբլերն ։ Եւ այնպէս քաղաքս ժամանակս կեցեալ 'ի սոյն խստակրօնութե ամս քսան ։

Արդ 'ի ժամանակս իշխանութեան մամիկոնենից Մուշեղայ, և Թէոդկայ վանականութենն[1], հրաշալի իմն գործեցան գործք 'ի վանսն Գլակայ 'ի դուռն տր Կարապետին ։ Իշխանն Արծրունեաց, որում անուն կոչիւր Սարգ պատրիկ, սա շինեաց քաղաքս եկեղեցիս և վանորայս. և ունէր կին բարեպաշտօն, Մարիամ անուն նորա ։ Սա առեալ զկին իւր եկած առհայրն իւր Մուշեղ, զի ինքն դէմ եդեալ էր գնալ 'ի Կեսարիա ։ Եւ թողեալ զկին իւր անդ, և յանձն արարեալ զգաւառն այլոց ազատաց, և ինքն գնաց ։ Իսկ կինն նորա յոյժ փափաքեալ էր սրբոցն՝ որ 'ի Գլակայ վանսն, և ուխտի Կարապետին ։ Յաւուր միում առեալ զփոքրիկ մանկիկն իւր անդրանիկն՝ որ էր յիստեան, գայ քաղաքս յօժարութե 'ի դուռն Կարապետին ։ Աղաչէր քաղաքս անգամ զկրօնաւորսն, զի թոյլ տացեն նմա մտանել յեկեղեցին ։ Իսկ սպասաւորքն արգելուին զնա. բայց զփոքր մանկ[illegible] Սմբատանս առեալ 'ի գրկաց նորա, բերեալ [illegible] Ջի սեղանոյն երկրպագեցուցին տն, և բերեալ ե[illegible] ցմայրն իւր ։ Իսկ նորա առեալ՝ սկսաւ արտասուել,

[1] Ցերիս օրինակս ն 'ի հայրապետական թաղեաց ։

և ողբալով ասէ. Ա՛յ ինձ մեղաւորիս, որ զրկեալ եմ 'ի քարեաց. ողբացէք զիս ո՛վ կանայք, անդի տուք արտասուաց իմոց ո՛վ ձայնարկուք: Ծածկեսցեն զիս լերինք, և ողորմեսցին ինձ բլուրք. գազանք եղկեսցեն զիս, և թռչնոց ազգք խիթասցեն ընդ իս: Հրեշտակք ապաշաւեսցեն զանձն իմ, և դևք ըմբռնեալ յարձակեսցին 'ի վերայ իմ: Ողորմեցարո՛ւք ինձ ո՛վ դուք սպասաւորք Կարապետին, և տուք տանել զիս 'ի տաճար անդր: Ապա դարձեալ ցմանուկն ասէր. Ո՛վ որդեակ, ընդէ՞ր բաժանեցար 'ի գրկաց իմոց. զիա՞րդ ոչ ողորմեցար մօրս քո. ո՞չ ես ծնայ զքեզ, և ո՞չ ես սնուցի զքեզ. և զիա՞րդ թողեր զիս միայն:

Ապա զայս ասացեալ կնոջն, հանեալ բազում անտաշահոտ խունկս տայր սպասաւորացն, և զանձս բազումս 'ի սպաս դք եկեղեցւոյն: Ապա պատգամս յղէր առ հայրն Թոդիկ, զի առեալ զիրսն՝ և փոխ թողցէ 'ի ներս: Ապա նա ասէ. Ոչ զայդ հրաման առեալ եմք յառաջնոցն, և ոչ իշխեմք առնել. արդ եթէ վասն հաւատոց ես, ընդունելի է քեզ այդ աշխատանքդ: Որդ մի՛ վասն պատասխանւոյն ձանձրանար 'ի մէնջ, այլ երթ 'ի խաղաղութիւն: Իսկ նա ասէ. Ոչ այդպէս. այլ եթէ վասն իշխանութեան է, ես ոչ երկնչիմ 'ի ձէնջ. իսկ եթէ վասն թշնամութեան Կարապետին ընդ մեզ, և ո՞չ ինքն 'ի կնոջէ ծնաւ, և ո՞րն ինքն 'ի կնոջէ է ծնեալ. և ո՞չ առաքեալք և մարգարէքն մայր ունէին: Որդ ես մտանեմ ո՛վ տէր, և զմայրն քո բարեխօս ունիմ ինձ. մի՛ առներ յիս զցասումն բարկութեան քո, զի մի՛ եղէց նշաւակ աշխարհի. զի եթէ դու զկնոջ կաթն արբեր, դոնեա և զիս տաճարիս արժանի արա: Ապա զայս ասացեալ՝ եմուտ 'ի տաճարն, և համբուրեաց զորմ տաճարին. և գնաց առաջի սրբոյ սեղանոյն, և ծունր կրկնեալ՝ ասէ. Տէր, տէր, զբեկեալ սիրտ իմ, և ողորմութիւն արա վիրաւո[illegible]. զի դու ոչ յիշեցեր յողորմութեան զբարկութիւն [illegible] արդ օրհնեալ եղիցի անուն քո յաւիտեան:

[illegible]ւ իբրև ել անտի տիկինն, խստացին [1] ախտացան և տրտմեցան յոյժ ընդ իրսն սպասաւորք եկեղեցւոյն,

1 Յերկուս օրինակս խանդացին:

և ոչ պատրաստեցին կնոջն կերակուր։ Իսկ նորա հրամայեալ սպասաւորաց իւրոց՝ ճաշ առնել կրօնաւորացն, և զամենեսեան 'ի սեղանն կոչել. և էին արք երեքհարիւր իննսուն և հինգ։ Նա յորժամ ճաշեցին, ասէ տիկինն. Ո՛վ սրբասէրք և փոյթք յածայլին մշակութեին, ուրախ լերուք ընդ իս 'ի տէր, զի նաբեաց ինձ, և կատարեաց զփափաքումն սրտի իմոյ. արդ օրհնեցէք զիս և սփոփեցէք 'ի խաղաղութիւն։ Նա յաւուր ելեալ գնացին։

Իսկ եկեղեցպանն և մի ոմն 'ի կրօնաւորացն գնացեալ առաջի սրբոյ սեղանոյն, ասեն. Ո՛վ տէր, և դու ներես կնոջն՝ որ զայն գործեաց. և այլ կանանց ըդնոյն խրամ համարձակեալ համանեն. արդ արա զնշան քո զօրութեան, զի վկայ լինիցի ազգաց, և վկայ և օրէն բազմաց։ Նա իբրև յուղարկեցին զկինն՝ ելանել ընդ փողոր զառ'իվերն 'ի հարաւոյ կուսէ վանացն, որ 'ի գլուխ Նարդակայ[1], և հայի 'ի փոքր ամրոցն Մեծամօր ներքոյ Նարդակայ՝ զոր Նողակն[2] կոչեն, եսես կինն 'ի հիւսիսական կողմանէն տեսանէ զարմանալի. և ընկէց զմանուկն 'ի դայեակն, և ասէ. Տեսանեմ այր մի գիսաւոր ընդ ամպս որոտացեալ, և ելեալ յեկեղեցւոյն գայ առ իս. տեսանեմ առ նա սուր սրեալ և թացուցեալ[3] և յարեան ներկեալ։ Նա ընդ բանսն եհար զնա, և անդէն սատակեցաւ։ Զոր տեսեալ ծառայիցն, ընթացեալ աղդ առնէին սպասաւորացն եկեղեցւոյն. և հայրն ելեալ բարկացաւ եկեղեցպանին, որոտեալ յոյժ՝ բազում ժամս արտասուեաց։ Նա առեալ զպատաւորսն տարաւ 'ի տեղին, և կազմեալ գերեզման, եդին 'ի նոյն տեղւոջն. և կանգնեաց խաչ քարեայ, և գրեաց 'ի նմա այսպէս.

ՈՐ ՈՔ ՑԱՆԴԳՆԵՍՑԻ ՄԱՐՏՆՉԵԼ

ԸՆԴ ԵԿԵՂԵՑԻ ԱՍՏՈՒԾՈՅ

ԱՅՍ ՄՈՒՔ ԵՂԻՑԻ ԸՆԴ ՆՄԱ

Նա հաստատեալ կայ այս գրով 'ի նոյն տեղւոջն։

1 Յերկու օրինակս Մարդակայ։

2 Յօրինակին միում Արդակայ՝ զոր Արդոքն կոչէն. իսկ յայլ երկու օրին. նախկին չիք։

3 Յերկուս օրինակս Բագուցեալ։

Իսկ զմանուկն առեալ եւ 'ի դայեակս մինչեւ յար-բունս հասաւ. և ապա առեալ 'ի վանսն ուսոյց զնա, և հաստատեաց զնա հայր վանացն յառաջ քան զբ-մահ իւր։ Իսկ հայր նորա իշխանն Արծրունեաց մինչ դեռ դայր 'ի Կեսարիոյ, լուեալ զմահ կնոջն, [illegible]-ջացաւ. իսկ հայրն Թոդիկ մխիթարեաց զնա ա[illegible]-նա խորհեցաւ շինել եկեղեցիս. բայց գնաց 'ի Մա-րավանսն վասն նիւթ գտանելոյ, և անդ շինեաց ե-կեղեցի վայելուչ, և կոչեաց զանուն նորա վասն կե-նոջն՝ սուրբ Ծածին, և զարդարեաց զնա հրաշալի սպասիւք և կազմութեամբ։ Նոյնպէս և զՍբ Կարապետն 'ի Գլակայ վանսն մեծաշուք փառօք զարդարեաց։

Սա դարձոյց զԱրուառն 'ի Կարապետն և զՊա-րեխ. քանզի իշխան ոմն անօրէն՝ տանն Մամիկոնենից՝ կորեաց զերկու աւանսն 'ի վանացն, և ետ զաւանսն ուժեմն կնոջ։ Օր, բարկացեալ հօրն Սիւրբն, ա-նիծեալ զիշխանն վասն կորելոյ զգիւղսն 'ի վանացն։ Իսկ յետ ամսոյ միոյ 'ի յորս ելեալ, ընկեց զնա երի-վարն, և եհան զոգին։ Բայց որդին Թէպլեա և ետ զաւանսն, այլ ոչ էառ 'ի նմանէ հայրն մինչեւ 'ի զալ այս իշխանիս։ Որդ այս իշխանս կշռեաց քառասներ-կու հազար դահեկան, և ետ իշխանին Տարօնոյ. և գնեաց զԱրուառս և զՊարեխ, և ետ զնոսա վանացն վճռաւ. և երկու գիւղս յիւր գաւառէն, զՍրմա-մեա և զգահ իշխանացն[1]։ Իսկ զորդին Թեոդեալ առ Թոդիկ, գնաց 'ի գաւառն իւր. և 'ի վախճանելն իւր՝ ետ տանել զմարմինն 'ի վանսն Իննակնեան, և կայ 'ի կողմ արեւելից երեք քայլ հեռագոյն յեկեղեցւոյն։

Ընդ այն ժամանակս սպանին զՈրմիզդ Պարսից արքայն, և Զամբ Խոսրով որդի նորա եկն փախըս-տական 'ի Յոյնս[2]. և կնքեալ Քաղկեդոնի հաւա-տոյն[3], դարձաւ զօրօք 'ի Մօրկայ առ Պարսից զօր-

1 Ցերկս օրինակս «Արփաձեփ» ու [illegible]։

2 Ցերկս օրինակս 'ի Հռոմ։

3 Զայս և Յովհաննէս կաթո-ղիկոս գրէ յիւրում պատմութեան այսպէս. «Բայց մինչ դեռ կենդա-նի էր սուրբ հայրապետն Մովսէս, Խոսրով որդի Կաւատայ արքայի Պարսից, յետ բազում մարտից ա-րութեանց և քաջութեանց, և ամբո-խոյ ազգաց բազմաց, ըստ ծածկման նշուլից ամպային լուսոյն 'ի սկզբան նո-րա՝ 'ի ժամ վախճանի իւրոյ հա-ւատացեալ յանձ Ճշմարիտ, և յոր-

ծառորքն, և զերկիրն իւր առնոյր։ Որդ մինչ 'ի Յունաց գայր Խոսրով, առեալ զՄուշեղ զտէրն Մնշյ և Խուլթայ Տարօնոյ իշխանին և Սասնոյ՝ հրամանաւն Մօրկայ, տարեալ 'ի Պոնտն, և Հայոց մարզպան հաստատեաց՝ տուեալ 'ի ձեռս նորա զզօրս Հայոց երեսուն հազար. և ինքն առեալ զզօրսն Յունաց եթանասուն հազար, գնաց 'ի Բահլ Շահաստան[1]։ Եւ ընդ Հայոց զօրսն հպարտացան ընակել Յոյնքն, անցին գնացին աւուր միոյ ճանապարհ 'ի դաստակերտ, և անդ իջին։

Իսկ Վախտրճէս, որ զՍրմիզդ եսպան, գումարեալ զզօրս Պարսից ութսուն հազար, և եկն 'ի վերայ Մուշեղայ։ Իսկ քաջն Մուշեղ քաջալերեալ զզօրսն, հաղիւ հաւանեցոյց մտանել 'ի պատերազմն։ Եդ բանս 'ի բերան Հայոց զօրացն Մուշեղ իշխանն Մամիկոնենից և Հայոց մարզպան, 'ի բարեխօս և 'ի յօգնութիւն զսբ Կարապետն կոչել. և միաբան զայս բան ասացեալ, յարձակեցան 'ի վերայ զօրացն Պարսից. և ետ Տէր 'ի ձեռս նորա զթշնամիսն։ Օ՛ որ գիտացեալ Մուշեղայ՝ թէ նա է թագաւորն, նմա մատեաւ. և սկսան բախել իրերաց։ Օ՛ որ վաստակեցաւ յոյժ Մուշեղ. սակայն զմահ և զնետանս առաջի եդեալ, բարձեալ զմուրճն 'ի վեր՝ իջոյց 'ի վերայ գագաթանն Վախտրճիչի, և ուղեղն ցնդեալ ընդ քիթմն իջանէր։ Եւ կտրեաց զգլուխն, և ձգեաց 'ի մախաղն իւր. և յորդորեալ զզօրսն 'ի պատերազմն, և զօրացեալ զօրացն, առաջի եդեալ զնոսա 'ի փախուստ, և կալան 'ի նոցանէ քառասուն և ութ իշխան կենդանւոյն. և համար կոտորածոյն ոչ երևէր՝ վասն բազմութեանն։ Իսկ արս հազար ընդ իշխանացն ըմ-

դի նորա միածին, և 'ի հոգին Սբոյ. և անարգեալ 'ի բաց զկրաւոր ամբարշտութիւն, խոստովան եղև՝ թէ ոչ գոյ այլ ած բաց 'ի միոյն միայն, զոր քրիստոնեայք պաշտեն։ Եւ ապա աւագանին սրբոյ վերբառին ծնընդեամն լուսաւորութեամբ հաղորդի կենդանարար մարմնոյ և արեանն Տն։ Եւ ոլջունեալ զՍբ ւեհաստաման Տէր հանգուցեալք, յետ երից աւուրց վախճանի 'ի բարւոք ծերութե։ Եւ բարձեալ զմարմին նորա քրիստոնէից նուիրական ... և քահանայական դասու, տարեալ զնեն 'ի շիրիմս թագաւորացն։

1 Յերիս օրինակս գնացին 'ի Բալխաստան։

բռնեալ, և մեծաւ յաղթութեամբ դարձաւ 'ի պատերազմէն :

Այս իբրև ազդ եղև առ Թագաւորն Խոսրով; և խնդաց յոյժ. իսկ զօրքն Յունաց տրտմեցան առաւել ամօթով : Իբրև կոչեաց Թագաւորն զՄուշեղ, և պատրաստեցաւ տալ պարգևս մեծ զօրացն, յղեաց առ Խոսրով արքայն Մօրիկ, քանզի զնա Թագաւորքն փոխարէն էին կացուցեալ. Այլ թէ գիտես դու զայդ, որ արքայի մահու սպառնայ Մուշեղ : Իսկ նա խորհեցաւ դարան մահու գործել նմա, և արձակեաց կոչել առ ինքն զՄուշեղ. և քոյր Խոսրովու իմացեալ, ազդ արար Մուշեղայ զնենգութեան եղբօրն : Իսկ Մուշեղայ առեալ ընդ իւր քառասուն իշխանս, առանց այլ ուրուք, կազմեցան զօրէն պատերազմի. և առներ պատերազմի ընդ մէջ ածեալ, այնպէս եկին առ Թագաւորն : Այս եկեալ երիվարօքն մինչև 'ի դուռն խորանին, և մեծ խստութեամբ տուեալ պատասխանի, և 'ի լոյս ածեալ զմահու դարանն, թքակածեցին զնա, և զանմտութեան նորա պարսաւեցին. և յարուցեալ մեծաւ բարկութեամբ իշխանօքն համդերձ, ել 'ի Թագաւորէն : Իբրև լուաւ զայն Թագաւորն՝ երկեաւ, քանզի մանուկ էր :

Իսկ իշխանն Մուշեղ արձակեաց առ Յունաց զօրավարն, և ասէ. Կամեցայք դուք սպանանել զիս նենգութեամբ, արդ մի զարթուցանէք զառիւծ՝ որ 'ի քուն է; և մի զգայլ՝ որ զխուր բարձն մոռացեալ է. ապա թէ ոչ, այն որ զութսուն հազարն յաղթահարեաց, կարող է և զեւթանասուն հազարն սատակել : Այս ինքն թողեալ զզօրսն 'ի Պուլին, 'ի բաց եկաց 'ի մարզպանութենէն. և առեալ զզօրս իւր, որ 'ի Մամիկոնեան տանէն էին, եկն 'ի գաւառ իւր : Այս յետ սակաւ ամաց եսպան Փոկաս զՄօրիկ, և ինքն նստաւ յաթոռ նորա :

Իսկ Խոսրով գնացեալ վրէժխնդիր Մօրկայ, և եկեալ անցանէր ընդ Կարնոյ քաղաքն. և արձակէ առ Մուշեղ իշխանն Տարօնոյ պատգամս, և ասէ. Արի եկ ընդ իս 'ի դուռն Թագաւորին Յունաց, լինել վրէժխնդիր Մօրկայ մահուանն. ապա թէ ոչ, 'ի դառնալն իմ՝ զերկիրդ քանդեմ, և զքեզ կապա-

*նոջ տանիմ 'ի դուռն արքունի, կնաւ և որդւովք: Իսկ նա ոչ ինչ յղեաց պատասխանի առ նա, այլ սկսաւ ամրացուցանել զգաւառն: Իսկ իբրև գնաց Խոսրով, եառ աւար և գերութի յերկրէն Յունաց. և անցեալ գնաց 'ի կողմանս Բասենոյ, 'ի Դուին և 'ի Հեր և 'ի Բահլ: Բայց յորժամ եկին 'ի Կարին, առաքեաց Խոսրով զՄիհրան 'ի Տարօն առ Մուշեղ իշխանն, զի կալցէ զնա և տարցէ 'ի պարսիկս: Իսկ հրաման տուեալ, զտեղին՝ յորս նա զհաւատն ունէր՝ [1] կործանել, և զկրօնաւորսն սպանանել. որոց եկեալ, զիրսն կատարէին:*

## ԳԼՈՒԽ Բ.

Պատմութիւն Պարսից. և գալն Միհրանայ 'ի Տարօն երեսուն հազարաւ, և կոտորելն զնոսա Գայլուն Վահանայ յՕձ քաղաքի. և դառնալն առ Միհրան աւերն Մշու, Գողհրոյ, Խութայ, Ռաստոյ, և Սասնոյ:

ՅԱՌԱՋԻՆ *ամին թագաւորութեանն Փոկասու, յորժամ սպանաւ Մօրիկ արքայ դաւով 'ի ծառայէ իւրմէ՝ որ և նստաւ յաթոռ նորա, յիշեաց Խոսրով զուխտն Մօրկայ՝ որ 'ի մէջ նորա և իւրն, և եկն էանց 'ի Յոյնս չորեքտասան բիւրովք. և բերեալ բազում աւարս և գաւառս, և դարձաւ: Իսկ զՄիհրան քեռորդին իւր առաքեաց 'ի Տարօն երեսուն հազարաւ: Իսկ իբրև եկն նա 'ի գաւառն Հաշտենից, կալեալ զոմն առաջնորդ իւրեանց՝ անցեալ եկին մինչև յԱրձանն քարեայ: Իբրև ընթերցան զգիր արձանին, խորտակեցին զնա. և ընտրեալք ութ հազար այր անցին 'ի Մեղտի և յԱրաքեղուն [2] ամրոցն. իսկ քսան և երկու հազարն դեռ յԱրձանն անդր կային, դիտելով զփախստականսն: Իբրև գիտացին արքն եւթն, որք*

1 Յերկուս օրինակս գրեալ էր, հաւատալիք: զոր նա հաւատոց ունէր: և յայլում

2 Յերկսին օրինակս յԵրուսաղէմ:

խոտաճարակքն ելին, եկին 'ի վանսն, և զամենեսեան փախուցին զկրօնաւորսն ։ Ոմանք փախեան, և ոմանք մնացին ․ բայց Պօղիկարպոս զամենեսեան յուղարկեաց յամուրն Ողկան, և 'ի տեղւոջն զհայրն մեծոյն զԹէոդիկ արգել, և զպաստաւորսն եկեղեցւոյն ․ և հրամայեաց սպասաւորացն՝ տէրունական մարմնոյն կազմել զանձինս ։ Երբև մատուցին զպատարագն եւ-թանեքին խոտաճարակքն, և հրամայեցին նշանագրի միում՝ որ եկեալ էր 'ի Յունաց՝ գրել զառ յինքեանց առացեալսն ․ և ինքեանք տարածեալ զձեռս իւրեանց առաջի 'նը սեղանոյն, և ասեն այսպէս ․

Տէր ած զօրութեանց և արարիչ յաւիտենից, որ ստեղծեր զմարդն 'ի պատկեր քո բարերարութեդ, և կացուցեր զնա իշխան 'ի վերայ երկրի ․ և ետուր նմա զփառս և զպատիւ յաւիտենական անմահ ։ Ուստի նախանձեալ բանսարկուին՝ մտին մեղք յաշխարհս, և 'ի մեղաց անտի մոռացումն, և 'ի մոռացմանէն կորուստ յաւիտենական ․ ուստի զորդէգրութիւնն, որ յայ էր, ջնջեցաք մեղացն ապականութ ․ ուստի փրկութե ճանապարհն բարձեալ էր, և մահ թագաւորեալ ։ Այլ դու, տր, գթացար 'ի ստեղծուածս քո ածային ձեռացդ ․ առաքեցեր զմիածին Որդիդ քո 'ի փրկութիւն աշխարհի, որ եկն և եղև մարդ 'ի կուսէ 'ի մեր նմանութիւնս, և էառ զմեր պատժապարտութիւնս ․ դատապարտեաց զմեղս մարմնով իւրով, և-լոյծ զանէծս նախաստեղծին Ադամայ ։ Ոչ եբարձ զապականութի մարմնոյն 'ի գերեզմանի, և իշխան զօրով 'ի վերայ մահու՝ զմահ գերեաց, և զդժոխս աւերեաց ․ զարգելեալսն ազատեաց, և ճանապարհս յերկինս ուղղեաց, առաջնորդելով ամենեցուն յառաջին յանմահական տեղին ։ Զայս ած արարեալ, և զմարմին իւր ետ հաւատացելոց 'ի կերակուր, և զարիւն իւր ըմպելի, և զմահ նորա պատմել տն հաւատացելոց ։ Եւ վասն անուան նորա զմահ առ ոչինչ համարելով՝ զանձինս իւրեանց մատնեցին տանջանաց և մահու, փոխարինի ակն ունելով 'ի միածնէ Որդւոյ քո, փառաւորելով զամենեցունց Հայր 'նը ։

Այսօր և մեք զանձինս մեր 'ի մահ մատնեմք և չարչարանաց և վշտի ․ այլ և վասն խոստմանդ, թէ որ

Ճանաչէին զիս՝ 'ի հալածանս կայցեն, զի "Սուր եսն եմ, ասէ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի »: և գիտեմք, Տր, զի ոչ անտես առնես զաղաչանս մեր, և ոչ ընդ վայր հարկանես զանձինս ծառայից քոց: Տուր, Տր, փառս անուանդ քո վասն սքանչելեաց քոց, զորս ցուցանես առ փառաւորիչս անուանդ քո յազգաց և յաւիտեանից: Մի տար օտարոտից զբնակութիւն սիրելեաց քոց անհաւատիցն ժառանգել. և մի մեծարանեսցեն հեթանոսք՝ թէ կործանեցաւ տեղի փրկութեան նոցա, և ոչ ոք է՝ որ օգնէ նոցա. և ուր է Տր Ած նոցա՝ յոր յուսացեալն էին: Ջնջեա, Տր, զգլխս արեան քո, և փրկեա 'ի ձեռաց նեղչաց զհաւատացեալս անուանդ քո. զի ծանիցեն ազգք հեռաւորք զմեծութիւն քո, և յուսասցին յանուն քո ամենեքեան, որք երկիւղիւ ծառայեսցեն մեծութեան քո: Ամրացո, Տր, զժողովուրդս քո, հովուեա և բարձրացո մինչև յաւիտեան. պարսպեա, Տր, խնամատար աջովդ զոր փրկեցեր պատուականն խաչիւդ քով, տալով օգնական 'ի նեղութեան 'ի դէպ ժամանակի: Զգեա, Տր, զամրածածուկ աջ քո 'ի վերայ բանաւոր փարախիս այսորիկ, և մի տար զժառանգութիւս քո բնակութիւն անհաւատիցն. եղիցի ձեռն քո 'ի զօրացուցանել զհաւատացեալսն, և որք դաւանեն և խոստովանին զանուն քո առաջի ազգաց անօրինաց: Տուր, Տր. մասն ժառանգութեան անձանց մերոց 'ի վերինն Երուսաղէմ. զի վասն քո մեռանիմք զօր հանապազ, և զանձինս մեր վասն քո անբաւ և անչափ մարդասիրութեդ 'ի մահ մատնեմք: Զայլ ինչ ոչ ունիմք պարտուց վճարումն, բայց յաշխարհի աստ նեղութիւն ունիմք:

Լուր, Տր, ձայնից մերոց, և խոնարհեցո զունկն քո 'ի մաղթանս ծառայիցս, բարեխօսութեամբ քո Կարապետիս և Մկրտչիս. և սորին ճգնութեամբ պահեա զեկեղեցիս հաւատացելոց անսասանելի և անդրդուելի, զի հաստատուն կացցէ հիմն հաւատոյս մերոյ 'ի վերայ հիման առաքելոց և մարգարէից խոստովանութեան, մինչև երևեսցի արդար դատաստանն համօրէն աշխարհի: Երևեսցի փառք քո, Տր, 'ի տաճարս յայս՝ զոր ընտրեցեր հիմնարկութեամբ սրբոյն Գրիգորի, և բնակութեամբ սրբոյ Կարապետիս. և կացցէ փառք Տր

Երրորդութեան 'ի տեղի սմա ։ Վասնզի սա է դուռն դժոխոց, և կապանք մահու. իսկ այժմ 'ի սմանէ մահ սարտուցեալ, երկնչի մերձենալ չարութեամբ առ հաւատացեալս ։ 'Ի սմանէ և դեւք պատկառեսցեն, և մի դժրեսցեն զսպասաւորս սորա, և որք դասեսցեն 'ի սմա ։ Ո՟ բազմութ՟ի դիւացն կապեսցես 'ի տեղւոջս յայսմիկ, զի խաթեսցեն զծուլացեալսն յա՟ծպաշտութենէ. բայց մի տացես նոցա իշխանութիւն՝ ըստ իւրեանց լրբութեան յարձակիլ 'ի վերայ հաւատացելոց ։ Եղիցի և որք հաւատովք յիշեսցեն զանուն տ՟ր եկեղեցւոյս 'ի նեղութ՟ե իւրեանց կամ 'ի վիշտս կամ 'ի ցանկութ՟ի չարեաց կամ 'ի լլկումն կամ 'ի գահավիժութ՟ի կամ 'ի գազանաց բեկումն կամ 'ի վիհս անհնարս որոգայթից, դու տ՟ր ա՟ծ մեր լուիցես նոցա ; և զերծուսցես զնոսա յարժանահաս չարեաց անտի. քանզի քո արարածք են և գինք արեան ։ Ո՛վ վասն մեղաց նոցա դատեսցես զնոսա, և վասն անօրէնութ՟ե նոցա պատժապարտեսցես զնոսա. այլ գթութ՟բ քով խնայեա, որ անոխակալդ ես և ամենեցուն մատակարար ըստ իւրաքանչիւր պիտոյից ։

Յիշեա զորս արեամբ քով գնեցեր, և մահուամբ քով որդեգիրս արարեր.. մի եղիցի իշխան 'ի վերայ հօտի քո, և ապստամբից ժառանգութ՟ե վերին Սիոնի ։ Տէր, տ՟ր, շնորհս բնակչաց սորա՝ որք պանդխտութ՟բ կենօք զնան 'ի կեանս յայսոսիկ, և ոչ ըստ մարմնոյ գրգանաց, և զմիտս իւրեանց յերկիւղ քո ունիցին. թող զմեղս նոցա, ընկեա զյանցանս նոցա, բարեխօսութ՟բ սրբոյ Կարապետիս. և հեղմամբ արեան սորա՝ գրեա զնոսա 'ի դպրութ՟ն կենաց 'ի վիճակս արդարոց քոց ։ Նա՝ աղաչեմք. եթէ մեղք մեծամեծք իցեն, 'ի կալ առաջի սրբոյ եկեղեցւոյս, և ունելով բարեխօս զհեղումն արեան սրբոյ Կարապետիս, և զմեր նահատակութ՟ի տառապանացս, հաշտեաց ընդ նոսա մարդասիրութ՟բ քով ։ Ո՛վ ամենատէր առներ զաղաչանս մեր, զի դու վասն մեղաւորաց իջեր յերկնից, որպէս ասացեր. « Ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս » ։ Արդ վասն մեղաւորաց աղաչեմք, և ոչ վասն արդարոց. զմեղաւորաց թող զմեղս, զհիւանդաց առողջացո զվէրս. և որք ապաւինեցան

'ի կենդանութեն իւրեանց, և գործեցին զչարիս 'ի մեր եկեղեցիս, և որք սատարեսցին սորայ Կարապետիս և կրօնաւորացս, և բազում մեղս գործեալ իցեն, և ազատաձեռնեն 'ի մեղաւոր ընչից իւրեանց սորայ Կարապետիս, նոյն ինքն Կարապետս լիցի փոխատու փոխանակ ապականացու ողորմութեն ըստ հաւատոյ նոցա զպարտիս իւրեանց. մատակարարեա 'ի նոսա առատապէս զթողութի մեղաց: Մնասցէ զօրութիւն աջոյ քո 'ի վերայ վիմիս այսորիկ, որպէս յառաջ հիմնարկեցաւ քո զօրութեամբ, նոյնպէս կացցէ մինչև գալ 'ի նորոգել զերկիր: Յայնժամ աւուր գտցես զսա նորոգ և անապական որպէս զխորանն 'ի հնումն, զի դու կարող ես յամի. և զմեր մահս ընկալ, և յամ արարածոց քեզ փառք յաւիտեանս:

Այս յասել զամէնն, եկն ձայն յերկնից՝ որ ասէր. Եղիցի ձեզ որպէս և կամիքդ. և որք վասն անուան իմոյ և Կարապետիս պանդխտեսցին, հատուցից նոցա 'ի գալստեան իմում, և զմեղս թողից նոցա. վասն զի մարդասէր եմ առ ամենեսեան. դարձեալ և դուք եկայք 'ի տեղիս լուսեղէնս, զոր պատրաստեցիք ճգնութեամբ ձերով: Այս լուեալ սրբոցն, երկիր պագին առաջի սորայ սեղանոյն, և ելեալ արտաքս: Այս զնաց Պօղիկարպոս առաջի սորայ խաչին, և անդ սկըսաւ աղօթել և աղաչել զա̃ծ վասն խաղաղութե̃ ա̃մ աշխարհի, և զեկեալ թշնամին խորտակելոյ, և աղքատաց մնալ 'ի տեղիս իւրեանց: Այս յանկարծակի հասին զօրքն Պարսից. իբրև տեսին զՊօղիկարպոս, վաղվաղակի հատին զպարանոց նորա և ընկեցին առաջի խաչին: Այս ինքեանք փութապէս եկին մինչև 'ի դուռն եկեղեցւոյն, և տեսին զկրօնաւորսն յարտասուս և յաղօթս պարապեալ. և յարձակեալ 'ի վերայ զեւթանեքեանն կոտորեցին: Որոց անուանքն են այսոքիկ. Թէոմնաս, Պօղիկարպոս, Սիմէօն, Յոհաննէս, Եպիփան, Դիմաւոս, Անարկիոս [1]: Սոքա եւթանեքեան կոտորեցան 'ի զօրացն Պարսից Միհրանայ, յամսեանն քաղոց՝ որ օր չորրորդ էր, յա-

1 Յերկուս օրինակս Նարէսոս:

ւուր հինգշաբաթի յիններորդ ժամու. և ինքեանք մնացին 'ի տեղին մինչև ցառաւօտն։

Բայց զզօրսն եկեղեցւոյն ոչ կարացին գտանել, զի ծածկեաց Տէր 'ի նոցանէ. և սկսան մրմռալ հարկանել, և ոչ գտին։ Եւ զարհուրեալք 'ի դիւաց՝ փախեան 'ի տեղւոջէն, զի գիշեր էր. և մարմինք սրբոցն անկեալ կային 'ի տեղւոջն զերիս աւուրս անթաղ, քանզի փախեան ամենեքեան։ Եւ յետ երից աւուրց եկին սպասաւորք եկեղեցւոյն, և հայրն Եպիփան. և տեսեալ զնոսա՝ զի մախճանեալ էին, յարտասուս և ղեալ՝ տրտմեցան յոյժ։ Այս առեալ զնշխարս նոցա իջուցին 'ի կողմն հարաւոյ 'ի մէջ դրախտին, և անդ փորեցին զերկիր, և իջուցին զնոսա 'ի գերեզմանն առ Անտօն և Կրօնիդէս, որք զկնի սրբոյն Գրիգորի եկեալ էին 'ի Կեսարիոյ. և կանգնեալ նշան տէրունական 'ի վերայ նոցա, բազմաց բժշկութիւն լինէր 'ի տեղւոջն։

Իսկ ոմանք հասեալք 'ի Մուշեղայ իշխանէն՝ տեղեկանալ վասն զօրացն, իբրև տեսին զնոսա կոտորեալս՝ հիացան. և փութանակի երթեալ պատմեցին զիրսն իշխանին Մուշեղայ։ Եւ նորա լուեալ, զաւուրս երիս իբրև զմեռեալ զնէր անխօս։ Իսկ զօրքն մատուցին նմա թուղթ քրիստոնէական օրինօք և մխիթարութեամբ, ասելով. Ճշմարիտ շառաւեղ երանելի յուսոյն, երջանիկ սպարապետ, մի տրտմիր վասն նոցա. զի աղօթիւք իւրեանց՝ ամուր աշտարակ եղեն աշխարհի, բարեխօսք և օգնականք մեզ առ ա̃ծ։ Բայց դու առաւել գոհութիւն մատո ա̃յ, որ 'ի քում ժամանակի յայնքան աստիճան առաքինութեան հասին, և հանգստեամբ փոխեցան առ ա̃ծ մարտիրոսական մահուամբ յաշխատութենէ 'ի հանգիստ, 'ի խոտաբուտ կենաց 'ի դրախտն փափկութեան, և մեզ միշտ բարեխօսք։ Արդ արի սթափեաց, և զեկեալդ 'ի վերայ մեր զՄիհրան յուղարկեսցես։ Իսկ նորա ոգեալ 'ի քնոյ զարթուցեալ, հրամայեաց կոչել առ ինքն զՄահան, զոր իշխան էր արարեալ զնա Տարօնոյ մինչ ինքն Հայոց մարզպան եղև։ Եւ ասէ ցնա. Որդեակ Մահան, դու գիտես զաւուրս կենաց իմոց, զի այս հարիւր և քսան ամ է՝ որ ես պատերազմ եմ

մղեալ, և ըմպեալ եմ որբեալ զարիւնն 'ի ճակատէս փոխանակ քրտանցն. ութսունևերեք ռազմ անձամբ իմով եմ կարգեալ և մղեալ: Այլ այժմ ծեր եմ և դողդոջուն, և օգնական իմ ա՟ծ է և դու, և ոչ այլ ոք. զի որդին իմ մեռաւ երկոտասանամեայ[1]: Այլ արդ, որդեակ, դիր զայս 'ի մտի քում. զի եթէ 'ի վերայ քրիստոնէից մեռանիս և եկեղեցւոյ, մարտիրոս ես. իսկ եթէ 'ի վերայ մարմնաւոր ընչից իջանես 'ի մարտ, և այն քաջութ՟ի է. զի ես այլ ժառանգ ոչ ունիմ, և երկիրս քեզ եղիցի, և զաւակի քում յետ քո: Արդ արի և գնա, և իմաստութ՟ի որսա զնա, և Տէր Կարապետն եղիցի քեզ օգնական և պարիսպ, և աղօթք սուրբ կրօնաւորացն յաջմէ և յահեկէ:

Իսկ Վահան յանձին կալեալ զբանն, սկսաւ դեսպանս կազմել և առ նա յուղարկել, զի հաշտեսցի և գնասցէ: Իսկ նա ասէ. Ոչ, այլ մինչև զիշխանն Մուշեղ ոչ կալեալ տանիմ 'ի պարսիկս առ արքայն, ոչ գնամ աստի: Իսկ Վահան արձակեալ, ասէ: Եթէ զերկիրս ինձ տաս տէրութ՟ի և իշխանութ՟ի, ես տաց զիշխանն Մուշեղ 'ի ձեռս քո. և ես ինքն առ քեզ գամ ապստամբութ՟ի 'ի նմանէ, և հատանեմ զերկիւղ 'ի պատեհութե՟ն: Այլ նորա արձակեալ կոչեաց, քանզի յօժար էր իրացն. և ինքն իջանէր 'ի Մուշն աւանի, և Մուշեղն յամուրն Ողկան:

Արդ այն զօրքն, որք զկրօնաւորսն կոտորեցին, անցեալ գնացին յՍտողօն ամրոցն[2]. կացին աւուրս երկու, և ոչ ինչ կարացին առնել. ապա գնացին առ Միհրան, և մատուցին զա՟մ ձև ամրոցին: Իսկ իբրև եկն Վահան առ Միհրան, և նա խնդրեաց 'ի նմանէ զՍտողօնս. և Վահան ասէ. Ոչ այդպէս, տէր. այլ տուր 'ի ձեռս իմ չորեք հազար այր, որ գնասցուք 'ի վերայ ամուր բերդիցն՝ ուր մտերիմքն նորա են և գանձքն. գուցէ բռնացեալ՝ ոչ տայցեն 'ի ձեռս իմ, ապստամբ զիս կարծելով. այլ այժմ երթիցուք նախ յՕձ քաղաքն, և ապա յայլ ուրեք: Իսկ Միհրան ~~տուեալ 'ի ձեռս~~ նորա չորս հազար ըն-

1 Յերկս օրինակս Երկոտասանամէ: ամրոցն. յայլում յՍտողէղծն ամրոցն,
2 'Ի միում օրինակի յՍտողէղծն ոմանք և 'ի ստորև:

ւուր հինգշաբաթի յիններորդ ժամու . և ինքեանք մնացին 'ի տեղին մինչև ցառաւօտն :

Բայց զգուշն եկեղեցւոյն ոչ կարացին գտանել , զի ծածկեալ էր 'ի նոցանէ . և սկսան մրճօք հարկանել , և ոչ գտին : Եւ զարհուրեալք 'ի դիւաց՝ փախեան 'ի տեղւոջէն , զի գիշեր էր . և մարմինք սրբոցն անկեալ կային 'ի տեղւոջն զերիս աւուրս անթաղ , քանզի փախեան ամենեքեան : Եւ յետ երից աւուրց եկին սպասաւորք եկեղեցւոյն , և հայրն Թոդիկ . և տեսեալ զնոսա՝ զի վախճանեալ էին , յարտասուս եղեալ՝ տրտմեցան յոյժ : Ապա առեալ զնշխարս նոցա իջուցին 'ի կողմն հարաւոյ 'ի մէջ դրախտին , և անդ փորեցին զերկիր , և իջուցին զնոսա 'ի գերեզմանն առ Անտոնն և Կրօնիդէս , որք զկնի սրբոյն Գրիգորի եկեալ էին 'ի Կեսարիոյ . և կանգնեալ նշան տէրունական 'ի վերայ նոցա , բազմաց բժշկութիւն լինէր 'ի տեղւոջն :

Իսկ ոմանք հասեալք 'ի Մուշեղայ իշխանէն՝ տեղեկանալ վասն զօրացն , իբրև տեսին զնոսա կոտորեալս՝ հիացան . և փութանակի երթեալ պատմեցին զիրսն իշխանին Մուշեղայ : Եւ նորա լուեալ , զաւուրս երիս իբրև զմեռեալս դնէր անխօս : Իսկ զօրքն մատուցին նմա թուղթ քրիստոնէական օրինօք և մխիթարութք , ասելով . Ճշմարիտ շառաւեղ երանելի յուսոյն , երջանիկ ասպարապետ , մի տրտմիր վասն նոցա . զի պօթիւք իւրեանց՝ ամուր աշտարակ եղեն աշխարհի , բարեխօսք և օգնականք մեզ առ ա͞ծ : Բայց դու առաւել գոհութիւն մատո ա͞յ , որ 'ի քում ժամանակի յայնքան աստիճան առաքինութ͞ե հասին , և հանգստեամբ փոխեցան առ ա͞ծ մարտիրոսական մահուամբ յաշխատութ͞է 'ի հանգիստ , 'ի խռոտաբուս կենաց 'ի դրախտն փափկութ͞ե , և մեզ միշտ բարեխօսք : Արդ արի սթափեաց , և զեկեալդ 'ի վերայ մեր զՄիհրան յուղարկեսցես : Իսկ նորա որպէս 'ի քնոյ զարթուցեալ , հրամայեաց կոչել առ ինքն զՎահան , զոր իշխան էր արարեալ զնա Տարօնոյ մինչ ինքն Հայոց մարզպան եղև : Եւ ասէ ցնա . Որդեակ Վահան , դու գիտես զաւուրս կենաց իմոց այս հարեւր և քսան ամ է՝ որ ես պատերազմ

մղեալ, և սլաքով եմ սրբեալ զարիւնն 'ի ճակատէս փոխանակ քրտանցն. ութսուն և երեք ռազմ անձամբ իմով եմ կարգեալ և մղեալ: Այլ այժմ ծեր եմ և դողդոջոտ, և օգնական իմ մեծ է և դու, և ոչ այլ ոք. զի որդին իմ մեռաւ երկոտասանամեայ[1]: Այլ արդ, որդեակ, դիր զայս 'ի մտի քում. զի եթէ 'ի վերայ քրիստոնէից մեռանիս և եկեղեցւոյ, մարտիրոս ես. իսկ եթէ 'ի վերայ մարմնաւոր ընչից իջանես 'ի մարտ, և այն քաջութիւն է. զի ես այլ ժառանգ ոչ ունիմ, և երկիրս քեզ եղիցի, և զաւակի քում յետ քո: Արդ արի և գնա, և իմաստութիւն արաս զնա, և Տէր Կարապետն եղիցի քեզ օգնական և պարիսպ, և աղօթք սուրբ կրօնաւորացն յաջմէ և յահեկէ:

Իսկ Վահան յանձին կալեալ զիրսն, սկսաւ դեսպանս կազմել և առ նա յուղարկել, զի հաշտեսցի և գնասցէ: Իսկ նա ասէ. Ոչ, այլ մինչև զիշխանն Մուշեղ ոչ կալեալ տանիմ 'ի պարսիկս առ արքայն, ոչ գնամ աստի: Իսկ Վահան արձակեալ, ասէ. Եթէ զերկիրս ինձ տաս տէրութիւն և իշխանութիւն, ես տաց զիշխանն Մուշեղ 'ի ձեռս քո. և ես ինքն առ քեզ գամ ապստամբութիւն 'ի նմանէ, և հաստատեմ զերկիւղ 'ի պատեհութեն: Այլ նորա արձակեալ կոչեաց, քանզի յոժար էր իրացն. և ինքն իջանէր 'ի Մուշ աւանի, և Մուշեղն յամուրն Օղկան:

Արդ այն զօրքն, որք զկրօնաւորսն կոտորեցին, անցեալ գնացին յԱստղօն ամրոցն[2]. կացին [illegible] կու, և ոչ ինչ կարացին առնել. [illegible] Միհրան, և մատուցին զնամ ձև [illegible]: Իսկ իբրև եկն Վահան առ Միհրան, և [illegible] 'ի նմանէ զԱստղօնս. և Վահան [illegible], տէր. այլ [illegible] 'ի ձեռս իմ [illegible] գնամք 'ի վերայ ամուր բերդին [illegible] րա էն և զանձքն. զուցէ [illegible] 'ի ձեռս իմ, ապստամբ զիս [illegible] էր թիցուք նախ [illegible] արկեր. Իսկ Միհրան [illegible]

1 Ցերխ օրինակ [illegible]
2 'Ի միում օր [illegible]

տիր անհնձիոյ, և նորա առեալ տանէր մինչև ’ի դուռն ( )ձ քաղաքին. և ’ի ներքս նենգութեան դարան մահու գործեալ’ ’ի ձեռս գալ զօրացն։ Եւ առ վայղիւն բանս արարեալ քաղաքին ’ի ներքս առնուլ զզ- զօրսն Պարսից. և քանզի նուրբ էր մուտ քաղաքին, սակաւ սակաւ կարէին մտանել ’ի ներքս. և որք ընդդուռն յանկոյս անցանէին, զնոյնս ’ի տունս արկեալ’ ’ի զգեստուցն կողոպտէին, և զգլուխսն կտրէին. և արտաքոյ պարսպին յանտերևան տեղիսն ’ի խորսն լընուլին։ Եւ ’ի չորեքհազարէն յիսուն այր թողեալ էր ’ի Խսարձ[1] կոչեցեալ գեւղն. և նշան տուեալ էր, թէ յորժամ զոք ’ի ձեզ յուղարկեմ, ’ի Միհրան գնացջիք, և այլ զօրս ածէք։ Եւ այնպէս արարեալ, և յղեաց’ թէ այլ զօրս տուր։ Եւ նոքա դարձան առ Միհրան, և առին ’ի նմանէ երկու հազար այր ընտիր, և եկին առ Վահան. և նա այնպիսի գործ հնարեաց, զոր ոչ կարացին գիտել պարսիկքն։

Արդ յորժամ եկին ’ի դուռն Մօրացն, Վահան զՊարսից զօրաց զերկվարսն և զհանդերձսն տուեալ էր քաղաքացեացն. ’ի դուռն կոչեաց զնոսա, և ետ խրատ’ թէ յորժամ նոքա ’ի ձեզ հայցեն, դուք միաբան ’ի քաղաքն դարձջիք; և ’ի ներս մտեալ’ զյաղթութիւն փողն հնչեցուցէք. և զդուռն քաղաքին ’ի բաց թողջիք, զի նոքա կարծիցեն’ թէ առին զքաղաքն։ Եւ արարին այնպէս։ Արդ իբրև տեսին պարսիկքն’ զի դիմեցին նոքա միաբան ’ի քաղաքն, խնդացին յոյժ. և դիմեցին նոքա ևս ’ի քաղաքն, և սկսան մտանել։ Իսկ Վահան փութով ընդ առաջ եկեալ զօրացն, աւետիս տայր. և քսան այր ’ի պարսիկ զօրացն աւետաւորս առաքէր առ Միհրան, թէ առաք զքաղաքն. և ինքն դարձաւ զհետ Պարսից զօրացն։ Եւ իբրև բազումք մտին ’ի քաղաքն, և այլքն դեռ մտանէին, սկսան կասկած առնուլ զիրացն, և կամէին յետս դառնալ։ Իսկ Վահան զհետ մտեալ, սկսաւ կոտորել, և ’ի մօրսն ընկնուլ. և ինքն աստ, և քաղաքացիքն անտի քառասուն այր մօրահերձ արարին. և զայլսն ’ի քաղաքն արգելեալ, կտրել տայր

1 Յերկուս օրինակս Դ. Հարցս։

զգլուխսն. և 'ի պարիսպն հանէին: Եւ աւարեալ համար յաւուր յայնմիկ, գտին զգլուխս վեց հազար, պակաս երկու: Եւ հրամայեաց զամենեցուն զքիթսն կտրել և զթլփատսն, և արկանել 'ի մախաղ:

Եւ ինքն առեալ զզօրս իւր արս եւթնհարիւր, եկն 'ի Մուշն աւան. և երեքհարիւր այր թողեալ յանգս Մեղտեայ[1], և երկու հարիւր այր աշտենաւոր թողեալ 'ի Սասանայ 'ի Ծնման[2], և ինքն երկու հարիւր այր առեալ ընդ իւր, եկն առ Միհրան. և մտեալ 'ի ներքս, խօսեցաւ ընդ նմա այսպէս և ասէ. Ես փախստական եկի 'ի քո զօրացն առ քեզ. զի ոչ 'ի քաղաքն թողին զիս, և ոչ աւարամասն ետուն ինձ. այլ և զիմ զօրսն 'ի քաղաքն արգելին, և ես փախստական գամ: Իսկ Միհրան խորհեցաւ հազար այր արձակել 'ի վերայ նոցա. և Սահան ասէ. Եւ 'ի քէն իսկ ապստամբեալ են. քանզի զաւար քաղաքին և զկապուտն առեալ, և կամին 'ի Յոյնս անցանել: Իսկ Միհրանայ առաւել բարկացեալ, հրամայեաց երկու հազար այր արձակել 'ի վերայ նոցա. և Սահան խրատ տայր զօրացն` 'ի գիշերի մի անցանել ընդ գետն Մեղտեայ, այլ իջեւանս առնել, և 'ի վաղիւն ապա գնալ. Գուցէ որ թշնամի, ասէ, յարձակիցի. և դուք չէք ընտել վայրուցն: Եւ ասէ ցնոսա. Հազար այր գնացէք ընդ Ծնման[3], և հազար ընդ դաշտն: Եւ տուեալ նոցա առաջնորդ, և ինքն ել 'ի Միհրանայ, գնաց յուղարկել զնոսա: Եւ իբրև գնացին յայն տեղին` ուր բաժանել հրամայեաց. առաքեաց հարիւր այր ընդ նոսա` որ ընդ Ծնմանն գնացին. և ինքն հարիւր այր առեալ, գնաց զկնի նոցա:

Եւ իբրև գնացին յեզր գետոյն Մեղտեայ, յայն կոյս իջոյց զնոսա 'ի քուն առնել. և ինքն 'ի պատրաստի արարեալ զդարանակալսն, հրամայեաց ծառայից` կտրել զերիվարսն արտոյ պատճառաւ, և զնոսա յանհոգս առնել: Եւ յանկարծակի հնչեցուցին զփողսն յետոյ և յառաջոյ, և 'ի մէջ առին զնոսա.

1 Յերկուս օրինակս Մեղտեայ: չեղծն Եողոյք 'ի Ծնման:
2 Յերկուս օրինակս Էրիզա կա- 3 Յերկուս օրինակս դարձեալ
ընդ այր աշխենաւոր 'ի Սասանայ 'ի Ծնման, որպէս և 'ի սորա:

և 'ի սակաւ ժամու քարձին զգլուխս նոցա, և 'ի գետ անդր ընկեցին, և մի ոք ոչ կարաց զերծանել. և զերիվարսն առաջի եղեալ, 'ի Ործմանն անցուցին: Այլ մինչ նոքա զայն պատերազմն անցուցին և վճարեցին, և յառաջման եկին այսոց, և նոքա դեռ չէին եկեալ 'ի Ործմանն, և կային մնային մինչ նոքա եկին և յանհոգս եղեալ իջին, զի զայն խրատ տուեալ էր Վահանայ: Այլ ապա կալեալ զխելս կամրջին, և ձայն սաստիկ հնչեցուցին շուրջանակի զնոքօք, և սկսան յանխնայ կոտորել զնոսա. և մի 'ի նոցանէ 'ի մօրն թագուցեալ, հեծեալ յերիվարն՝ փախեաւ 'ի Մուշ: Որոյ զհետ մտեալ երկուց ոմանց, և յայնկոյս գետոյն ջաղխեցին զգլուխ նորա, և ուղեղն ընդ քիթն իջանէր: Այլ մեւս ընկերքն առեալ աւազ մատուցանէր, և ասէր. Պարսից խորտակարար, առ զաղս: Այլ կոչեցաւ անունն տեղւոյն այնորիկ Աղաղս մինչև ցայս օր. զոր և աւան իսկ շինեաց: Այլ Վահանայ 'ի մօրին տուեալ զնոսա, ոմանք այլ ոչ կարացին ելանել, և ոմանք 'ի ջուրն անկեալ խեղդեցան: Այլ զորս 'ի ցամաքն սպանին, զքիթսն և զթլփատսն կտրէին և պահէին, և զգլուխսն 'ի մօր անդր և 'ի դաշտն ընկենուլին: Այլ ժողովեալ զերկու հազար երիվարսն, եւ տանել յՈղանոց[1] բերդն, զոր դեռ Ողնուան կոչեն:

Այլ 'ի վաղիւն դարձեալ եկին առ Մեհրան[2]. և Վահան հրամայեաց ծառայից իւրոց՝ ճաշ առնել, և զՄեհրան կոչել: Իսկ նա վասն խօթութեան պատճառանաց 'ի սենեակ մտեալ, զՎահան միայն թողոյր առ իւր: Իսկ Վահան դռնապանն եղեալ, և զիշխանսն որք գային դարձուցանէր, ասելով. Հայոց մարզպանն չկարաց գալ 'ի ճաշն: Իսկ նոցա ժողովեալ 'ի տաճար մի, ընդ գինի մտին. և Վահանայ առեալ զմախաղն, ուր քիթքն և թլփատքն՝ կային, եւ բերել առաջի իւր: Իսկ նորա զարհուրեալ, ասէ. Ո՞ինչ է այդ, զոյց տուր ինձ: Այլ նա կարգաւ պատմեաց նմա ստուգիւ, և մի բան ոչ թագուցեալ 'ի նմանէ զոր ինչ արարեալն: Իսկ նորա բարկացեալ, առեալ զտէգն 'ի ձեռանէ ծառային, և կամէր հար-

1 Յերկու օրինակս յՈղնու բերդն: 2 Յերկուս օրինակս առ Նիխոր:

կանչել զՍահակ ։ Եւ նորա ձգեալ զձեռն իւր 'ի սուրն՝ որ առաջի կայր , կտրեաց զԹլփատն նորա , և եդ 'ի բերան նորա , և ասէ . Դու ես , որ Թշնամանէիր զա̃ծ , և զկրօնաւորսն իմ զսիւնսն աշխարհի սպանանել տայիր ։ Եւ կտրեաց զքիԹսն , և ցուցանէր աչացն . և պատառեալ զփորն , ետ ծառայիցն հանել զլեարդն և դնել 'ի բերանն . և հարեալ զդանակն 'ի փորն , և ետ Թողուլ 'ի ցից ։

Եւ մինչ լռեկ որ զԹլփատն կտրեաց , ասէ . Տուր քանից նիշ և պատուէր 'ի պարսիկն՝ որ յՄպահունիս , և ես ապրեցուցանեմ զքեզ ։ Եւ նորա տուեալ քանից նշան և պատուէր՝ բազում երդմամբ աստցեալ , զոր նա և նա միայն գիտէին ։ Եւ իբրև ասաց զիրսն , առեալ զդանակն եհար 'ի սիրտն , և անդէն մեռաւ ։ Իսկ ծառայիցն առեալ զարիւնոտ զգեստն պահէին , և զգետինն մաքրեալ յարենէն , և կողմնեցուցեալ 'ի մահիճսն , քնոյ պատճառանօք ծածկեցին ։ Եւ ինքն կոչեաց զպարսիկ դպիրն Միհրանայ 'ի սենեակն . և ետ գրել ողջոյն և քանից նիշ[1], Թէ յետ երից աւուրց եւ 'ի բլուրդ՝ որ 'ի վերայ Կոթ ձորոյն՝ հազար արամբք միայն , զի տեսցուք զիրեարս ։ Եւ դպիրն գրեաց որպէս ասաց նմա Սահակ , և եդ զմատանին Միհրանայ 'ի վերայ . և կոչեաց 'ի ծառայիցն Միհրանայ տասն այր հաւատարիմ , և ետ տանել զդԹուղԹն առ Մարշիր՝ որ զհազար այրսն ունէր ընդ ինքեան , և յՄպահունիս էր . և առեալ զԹուղԹն գնացին ։ Իսկ Սահակ կոչեաց զնուիրակն , և ասէ . ԵրԹ կոչեա զայն անուն իշխան ։ Եւ կոչեաց . և իբրև գայր իշխանն և մտանէր ընդ փողոցն խաւարչտին , միայն վեց այր աստի և անտի կային ։ Եւ մինչ դեռ կամէր մտանել 'ի սենեակն , աճապարեալ ունէին զփողոցն , զի մի ձայն ինչ բարձցէ 'ի մեռսն . և հարեալ դանակ 'ի սիրտն , 'ի մեւս այլ սենեակն ձգէին զդին . ուր և զնուիրակն և զդպիրն վասն պատճառանաց իրաց արկանել ետ 'ի բանտն ։

Եւ ինքն սկսաւ կոչել զիշխանսն խաբէուԹեամբ 'ի խորհուրդ , և նենգով այսպէս առնէր . և եսպան

1 Ցերկուս օրինակս ողջոյն և նշանաբան ։

յաւուր յայնմիկ իշխանս ութսուն և վեց ։ Եւ իբրև վճարեցան իշխանքն , գնաց ինքն 'ի տաճարին՝ ուր զօրքն էին Պարսից . և ժողովեաց զնոսա 'ի ներս , և զիւրսն և զայլ գաւառին մարդիկն արտաքս եհան ։ Եւ ինքն սկսաւ զնոսա վտանգել բանիւ , թէ արժա՞ն էր ձեզ զմարդասպանսն զմարզպանին գողանալ . արդ հրամայեալ է՝ զձեզ զամենեսեան մերկ հանել , մինչև ցուցանէք ։ Եւ հանեալ զամենեցուն զհանդերձսն , արգել զնոսա 'ի տաճարին , և 'ի միւս այլ աւուր հազար հինգհարիւր և երիս ։ Եւ փակեալ զդրունս տաճարացն , ետ բերել զգլուխն Միհրանայ , կախեալ ընդ երդն , ցուցանէր նոցա ասելով . Նա այն գլուխն է , որ խորհէր զմեր Սպարապետն հիմն 'ի վեր առնել , և զկրօնաւորսն հրով այրել ։ Եւ հրամայեաց վառել զերկոսին տաճարսն , և ասէ ցնոսա . Դուք ինձ մխտակարք էք , որք զտաճարսն այլ յայրել էք՝ 'ի տալ . բայց թէ կամի ած և սուրբ Կարապետն , ես զայս փայտս յապաշաւել եմ թողեալ . սակայն ընդ ձեր և ընդ ձեր թագաւորին կառափն հանեմ . զի ես աշխատեալ եմ 'ի շինելն , և դուք մերկք էք և ցրտացեալք . բայց վասն իմ մեղացն թողութիւն և իմ հարցն՝ ջեռարուք , ասէ , և մի ամաչէք . և տունքդ այդոքիկ՝ գերեզմանք ձեզ եղիցին շնորհիւ Պարսից արքային ։

Եւ բորբոքեալ բոցն ճարպոյն , մինչ զի քաղաքն արբեալ լինէր 'ի հոտ ճենճերաց նոցա ։ Եւ ինքն ժողովեալ զկապուտ նոցա և զգանձս , և ետ տանել յաւմուրն Սղկան . և զիշխանն Մուշեղ ետ ածել 'ի քաղաքն . և ինքն առեալ երեք հազար այր , գնաց ընդ առաջ Սաշրայ ։ Եւ երթեալ 'ի վերայ լերինն , ընդ երիս դեհս զարան գործեաց , և զդպիրն և զնուիրակն առաքեաց առ Սաշիր անդ ։ Եւ նոքա երթեալ կոչեցին զնա , զի իջեալ էր յեզր Ոփայ[1] ծովուն ։ Բայց նուիրակն և դպիրն ինչ ոչ գիտէին յիրացն , զի Սահան ոչ ետ մտնել 'ի զօրսն , այլ առանձին յետոյ գային ։ Եւ յորժամ զտաճարն այրեաց , զնոսա 'ի պատճառս իրացն յայլ վայրս առաքեաց , զի մի գի-

1 Յերիս օրինակս չէր ծովուն ։

տարացեն զիրամ. նա և զՀանդերձս իշխանացն առեալ, կարծեցին եթէ միհրանեանքն են: Արդ իբրև գնացին, և զՄաՀանայ տապացեալսն պատմեցին, որպէս թէ յերեսաց Միհրանայ, և առեալ Մաշքայ Հազար և Հարեւր այր, եկն 'ի վերայ լերինն: Եւ իբրև մօտեցան 'ի տեղին, Մաշիր արս Հարեւր 'ի բացեայ եթող վարան այլ թշնամեացն, և ինքն եկն եմուտ առ ՄաՀան 'ի վրանն', կարծելով թէ Միհրան է: Իբրև ետես զնա ՄաՀան, և ասէ. Մաշիր, զի՞նչ եղիք 'ի մեր. 'ի պարսիկ Հաւատ կամէիք դարձուցանել զերկիրս Հայոց: Եւ Հրամայեաց դաՀճապանացն՝ արգելուլ զզօրսն 'ի Հեռաւստ, և զՄաշիր գանեաց սաստիկ, մինչև էառ բանից նշան զզօրսն կոչելոյ: Եւ նա 'ի Հարկէ ցաւոցն ետ բանից նիշ 'ի զօրապետսն և առ իշխանսն՝ գալ 'ի տեղին փութով. և ետ գրել թուղթ պարսիկ դպրին, և կաշառեաց՝ զի այնպէս գրեսցէ, որ գայցեն զօրքն 'ի վաղիւն. Զի Յոյնք են 'ի գալ 'ի վերայ մեր, ասէ: Եւ տուեալ զմատանին Մաշքայ, և թուղթ յայն զօրն՝ որ Հեռի կային, և դարձուցեալ կոչնականս զօրացն այլոց, և զիշխանսն մի մի կոչել տայր, և զգլուխսն կտրէր: Եւ ոչ իմացան այլ զօրքն, մինչև մի ոմն յիշխանացն փախեաւ և անկաւ 'ի բանակն իւր:

Եւ իբրև գիտաց ՄաՀան՝ թէ յայտնի եղև իրքն, ապա արարեալ այնոցիկ՝ որք 'ի դարանսն կային, և յարուցեալ նոցա 'ի յետին կողմանէ՝ փախստական արարեալ զնոսա 'ի բերդն կոյս Ողոթ ձորոյ. և որ բուն յետինքն էին 'ի դարանի անդ, չյարեան իսկ: Եւ արք բերդին ընդդէմ ելեալ, քարամբք և գլօք յանկարծ կոտորեցին զնոսա. և փախստականք եղեն արք Հարեւր յԱպաՀունիս: Զոր տեսեալ դարանակալացն՝ յարեան 'ի վերայ, և կալան զնոսա. և ապա 'ի վաղիւն սկսան մեւս զօրքն Պարսից գալ 'ի վերայ բլերն 'ի նոյն տեղին: Իսկ ՄաՀանայ ընդ առաջ գնացեալ նոցա, իջոյց զնոսա, և ասէ. Թողէք զերիվարսդ, զի արածեսցին մինչև ցերեկոյ. և յերեկոյին իջանեսցուք 'ի դաշտն 'ի վերայ Յունացն: Եւ նոքա Հաւանեալ, արարին այնպէս: Եւ դարանակալքն յանկարծակի զինեալք, կտրեցին զերիվարս

նոցա 'ի զօրացն, և փախստական արարեալ անցուցին ընդ Արածանի, և հանին 'ի Բաղքէ: Իսկ զօրացն Պարսից տեսեալ, ապաշաւեցին միաբան և ասեն. Այս մեզ, կորեաք: Եւ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ Կորի:

Իսկ Մահանայ առեալ զզօրսն, իջուցանէ զնոսա 'ի ձորն քուն. յարեան դարանակալքն աստի և անտի, և առեալ զնոսա 'ի մէջ՝ կոտորեցին, ոչ ողորմելով ումեք: Եւ հրամայեաց արս քառասուն թողուլ զրուցատարս Պարսից արքային: Եւ ետ տանել ըզգլուխն Միհրանայ առ թագաւորն Պարսից, ասելով. Այս մարզպանս Հայոց յորժամ եկն յերկիրս մեր, և զօրս հակառակեալ ընդ իրեարս՝ գունդ խնդրեցին, և ոչ կարացին գտանել. և Յոյնք մեր [1] թշնամիք էին, 'ի նոսա ոչ իշխեցաք գնալ. և ձեզ ընդ ականք էաք, և ձեր զօրացն գունդ ոչ կայր. ապա կորեցաք զգլուխդ զայդ, և խաղացաք: Այլ լուաք եթէ 'ի Շահաստանէ ելեալ էք 'ի Բոստր [2] քաղաք՝ յերկիր տափարակ և դաշտաձև, և գիտեմ որ գնդի խաղայք. առէք զգլուխ քեռորդւոյդ ձերոյ, և եղիցի դա ձեր գունդ ազգաց յազգս: Եւ իբրև գնացին արքն քառասուն, և տարան զգլուխն Միհրանայ առ արքայն Խոսրով, և նա խռովեցաւ պղտորեցաւ, ամաչեաց զամօթն յաւիտենից: Եւ 'ի միւսում ամի խրոխտացեալ, այլ զօրս առաքեաց:

'Ի նոյն ամի տր Կարապետն, որ յԻննակնեան տեղւոյն էր, փլաւ. զի շարժ խստագոյն եղև, վասն որոյ և տունքն՝ որք 'ի ներքոյ նորա՝ 'ի շարժէ անտի փլան: Իսկ եկեղեցին, քանզի հիմն 'ի վերայ նորա էր, շարժեցաւ և պատառեցաւ. զոր Մուշեղ Տարօնոյ իշխանն, տուեալ գանձս բազումս, և հրամայեաց քարակոփս շինել: Բայց ոչ ժամանեցին շինել որպէս արժանն էր. զի զօրքն Պարսից նեղէին զնոսա: 'Ի սոյն ամի շինեաց Մուշեղ զտր Կարապետն, և ինքն վախճանեցաւ. և կայ 'ի թաղման առ Արծրունեաց իշխանին, 'ի կողմն արևելից Ճակատուն:

Եւ յետ վախճանելոյն Մուշեղայ՝ նստաւ յաթոռ

1 Յերկուս օրինակս չէր:  2 Յերկուս օրինակս Բասրք:

իշխանութեան նորա Վահան, իշխանն մամիկոնէից տան ։ Ո՟ր և թագաւոր քահանայիւք և քսան եպիսկոպոսօք տօն ցնծութեան կատարեցին փրկական տեղեացն, ուր զհաւատոն ունէին, և 'ի դուռն սրբոյ Կարապետին, և 'ի վանս Գլակայ եպիսկոպոսին ։ Այս ութևտասն գեւղս ազատեաց և ետ եկեղեցւոյն, ընծայեաց զանուանս նոցա յարքունի դիւանէն ։

'Ի նոյն ամին վախճանեցաւ Երանելին Թէոդիկ, հայր վանացն Գլակայ ․ և կայ թաղեալ 'ի նոյն տեղւոյն, զոր Հայրբեղուր կոչէին ․ որ է ընդ աջմէ եկեղեցւոյն 'ի հիւսիսոյ ընդ արեւելս[1] ։ Այս նստաւ յաթոռ նորա մանկիկն Ստեփաննոս, որդի իշխանին Արծրունեաց, որոյ մայրն հերձաւ ․ և կան 'ի թաղման ծնօղք նորա 'ի նոյն վանսն ։ Այս թագաւոր ուղղութեամբ գործեաց 'ի գաւառն Տարօնոյ, զի վերադոյն ունէին զնա քան զեպիսկոպոսն ․ զի հայր էր վանացն, և ընդ ձեռամբ իւրով ունէր երեքհարիւր իննսունևութ կրօնաւորս ․ զի այնչափ առաքինի էր, որ ամենեքեան իբրև զՅովհաննէս Կարապետն համարէին զնա ։

Սա խնդրեաց 'ի Տր՟ Կարապետէն, կապել զբերանս գազանացն՝ որք բեկանէին զլուսաւորսն եկեղեցւոյն ։ Այս թագաւոր պարկեշտ վարուք իւրովք յանդիմանեաց զիշխանն Հայրբեայ, որ ունէր զկին եղբօր իւրոյ ․ և ածեալ 'ի հաւան՝ կտրել 'ի կնոջէն, և արարեալ կրօնաւոր, ետ նմա շինել զեկեղեցին՝ որ 'ի Թիլն աւանի յԵկեղեաց գաւառի ։

1 Յերկու օրինակս ընդ Արեւելից բլուրն էէրն ոչն 'ի գրչի ։

# ԳԼՈՒԽ Գ.

Վասն զաւրացն Վախտանգայ 'ի Տարօն երեսուն հազարաւ, որ և շինեաց զՁորոյ քաղաքն և զամուրսն զԳաւհար, և կացեալ 'ի Գըդդուա ամս երիս։

ՊԱՐԶԵՆԱԼ զօրաժողով եղև Խոսրով արքայ 'ի վերայ Յունաց երկրորդ անգամ, 'ի մեծի կռուեալ ընդ-դէմ Միհրանայ քեռորդւոյն իւրոյ. և առաքեաց զՎախտանգ՝ զնորին հօրեղբայրն, երեսուն հազար ընտիր առն և ձիոյ։ Իսկ նորա եկեալ 'ի գաւառն Մամահունեաց, արձակէր հարկապահանջս 'ի Հարք և 'ի Հաշտեանք և 'ի Տարօն։ Մը. որ զըրեն գաւառապետքն. Եթէ Վահան տայ, և մեք. ապա թէ ոչ, ունայն գնայք 'ի մէնջ։ Զայսպիսի լուեալ Վախտանգայ, խռովեցաւ և ըմբոստացաւ. և թողեալ կողմնապետս յՄամահունիս, և փութացեալ ալեօք եկն 'ի գլուխ Տարօնոյ։ Եւ շինէ զաւերեալն Ձիւնկերտ քաղաք մեծ. և փոխէ զանուն քաղաքին ըստ անուան կնոջն իւրոյ՝ զոր էած ընդ իւր՝ Պորպէս, այս ինքն համեղ։ Տնկեաց այգիս և բուրաստանս. և փոխէ զատրուշանն 'ի դուռնն Կաթուղիկէին, զոր հիմնարկեալ էր որդւոյն Վահանայ։ Եւ 'ի վերայ լերինն Տարօնոյ շինեաց ամրոց, և կոչեաց զանուն նորա Գաւհար. քանզի անդ ամենք զահավէժ եղեն 'ի վերայ անասնոց, կարծելով թէ հեծեալք են։ Փոխէ զԳառող լեռնաբլուրն, յանուն որդւոյն իւրոյ Գոեգուռոյ՝ Գողուռ[1], զբօսանալով յամարան աւուրս 'ի վերայ նորա։ Եւ յղեաց պարգևս բազումս Վահանայ, և թուղթս՝ զայս ինչ.

Ողջ և հզօր բազկիդ Վահանայ սպայի, դիցն օգնականութեամբ ողջոյն։

Որ թէպէտ և ընդ մահ եղբօրորդւոյն մերոյ տրտմեցայք, բայց ընդ հզօր քո իմաստութիւնդ զարմացայք։ Մերդ ես եկեալ եմ վասն սիրոյ և խաղաղութեան, և

1 Յերկուս օրինակս Գըգոռ, յայլում Գգոռ։

դու արի եկ առ իս, և երդուիր տալ զհարկ արքունի և կալ հնազանդ, և յառաջին պատիւն ձեր մնալ, և այլ ոչ մտանել 'ի նենգութիւն ։ Ողջ լեր 'ի դիցն աջոյ ։

Եւ նա յղեաց նմա պատասխանի այսպէս .

Սատ և Թոյլ անձինդ Սախտանդայ, և խող քոյ-ոց դասուց՝ որք զաղբ ճաշակեն, ողջոյն ։

Այլ թէպէտ ընդ մահն Միհրանայ խնդացիր, բայց ընդ անմտութիւն քո լացի . որ զմահն նորա լսեցեր, և զիմ կորովութիւնս ծանեար՝ զոր ինձ ետ ա̃ծ, զի-ա՞րդ իշխեցեր գալ 'ի վերայ եկեղեցւոյն ա̃յ ։ Այլ թէ սէր եկիր առնել, զկինդ 'ի հետ ընդէ՞ր ածեր . մի՞ թէ որդի՞ խնդրես յերանեայ մերոյ . և եթէ սիրոյ պատ-ճառանօք եկիր, զիմ քաղաքդ է՞ր շինեցեր և ամրացուց ։ Այլ գիտեմ զի սուտ ես, և իբրև զշուն քծնիս[1] ։ Արդ զկեանս քո առաջի մահու դիր, և յերկրպէս արի եւ և գնա խաղաղութ̃բ . ապա թէ ոչ, զմահն՝ որ ընդ քեզ անցանելոց է՝ զայն ա̃մ երկիր տեսանէ ։

Եւ նորա բարկացեալ առաքեաց վեց հազար այր 'ի վերայ նորա 'ի Մուշ ։ Իսկ ոմանք աղդ արարին նմա, և ասեն՝ թէ գայ Սահան 'ի վերայ քո վեց հազարաւ ։ Եւ նորա գիշերագնաց եղեալ, գնաց 'ի վերայ նոցա՝ որք իջևանեալ էին 'ի Ծծմակն[2], և յանկարծակի եհար զնոսա սրով, և ոչ ժամանեցին ընթանալ զերի-վարսն ։ Քանզի որդի նորա Սմբատ ընդ մէջ անցեալ, կոտորեաց չորեք հազար երիվարս . և անցուցանէր յայն-կոյս Արածանոյ, և հանեալ 'ի կողմն Հաշտենից ։ Եւ երկերիւր ձի յառաջին յաղթութեանն աւարա-մասն ետուն եկեղեցւոյն 'ի Գլակայ վանսն, զի այն էր տուն նոցա հայրենական . և անդ կնքեցին զնա ։ Իսկ Սահանայ տուեալ զնոսա ձորացն՝ զաւազակսն կո-տորեաց, և զաւազանն խոցոտեաց, և երկերիւր այր 'ի ձոր անդր ընկղմեաց ։

Իշխանն Հաշտենից ունէր ընդ ձեռամբ իւրով ե-րեք հազար վեցհարիւր այր, և իշխանն Պալունեաց երկու հազար և երկերիւր, և իշխանն Արջուց երեք

1 Յերիս օրինակս կծկիս ։

2 Յերկուս օրինակս գիշերագնաց եղեալ, գնաց առ ափն՝ որ Ծծմայ յորժն էր . ուր իջեալ էին . յարձակեալ հա-սանէ նոցա 'ի Ծմակն, ուր իջեալ կային ։

հազար, և իշխանն Եղնուտայ¹ հինգ հազար, և իշխանն Վահան ութ հազար, և Սմբատ որդի նորա վեցհազար. ընդ ամենայն քանեւութ հազար: Այս ա̃մ զօրք կային ընդ ձեռամբ Վահանայ. բայց բաժանեալ էր, և կողմնապահս թողեալ ա̃մ տեղեացն. և կային առ ինքն յաւուր յայնմիկ երեք հազար այր: Եւ բազում նախճիրս գործեաց անդ իշխանն Հաշտենից. զի աճապարեալ կտրեաց զգլուխն Մահանայ, և զզօրսն փախստականս դարձոյց: Եւ նեղեալ զնոսա, մինչև յաղաչանս անկեալ՝ և հարկս խոստանային տալ նոցա: Իսկ Վահան ասէ. Տուք 'ի մեզ զգլուխն Մահանայ, և թողումք զձեզ: Եւ զօրքն 'ի բազում տարակուսանս լեալ՝ խնդրէին, և ոչ գտանէին: Ապա կալեալ զորդի նորա զՎահ, և տուն զՎահան: Իսկ իշխանն Հաշտենից յառաջ մատուցեալ, ասէ. Կամ տուք զՄահան 'ի մեզ, կամ տուք երեսուն հազար դահեկան: Եւ նոքա ետուն երեսուն հազար դահեկան, և դարձան: Իբրև ետես Վահան եթէ գնան ամբողջ, զնախանձն ա̃յ նախանձեալ՝ յարձակեցաւ 'ի վերայ նոցա, և սկսաւ կոտորել զնոսա: Իսկ նոցա զաղաղակ բարձեալ, ասեն. Ա՞ռ ինչ դարձայք 'ի պատերազմ, ո՞վ անելախօսք: Եւ կոչեցաւ տեղին այն Առինչս: Եւ տարեալ ածեալ զնոսա 'ի դաշտին, կոտորած սաստիկ գործեցին. և որք փախեանն՝ էին պակաս քան զհինգհարեւր այր. որք երթեալ պատմեցին Վախտանգայ: Իսկ նորա բարկացեալ, հրամայեաց գլխատել զնոսա՝ որք դարձանն. և ոչ մնաց 'ի վեցհազարէն և ոչ մի:

Իսկ Վախտանգայ 'ի ցասումն բարկութեանն շարժեալ վասն Մահանայ, առաքեաց դարձեալ զԱյուր 'ի վերայ ութ հազարաւ: Որք եկեալ բանակեցան յեզերս Մեղտայ, և արձակեցին առ Վահան այսպէս. Այ չարաբարոյ գայլ Վահան. մինչ գիտես եթէ ծառայելոց ես Արեաց արքային, ընդէր այդպէս յանդգնեալ անամօթիս: Արդ արի եկ առ մեզ, և լեր հարկատու. ապա թէ ոչ, մեռանիս որպէս բղշուն: Եւ նորա լուեալ զայն, առեալ վեցհազար այր՝

1 Յերկս օրինակս Ողնուփինաց:

դնայց 'ի վերայ նոցա ինքն և որդւոյն իւր Սմբատ : Իբ-րև կացին համդէպ իշխրաց , սկսաւ Մսուր Թշնամանել զՎահան , և գայլ կոչէր նմա : Եւ նա ասէ . Յիրաւի է անունդ իմ . քանզի գամ կոտորեմ, երթամ և այլ գամ : Եւ սկսան մարտնչել ընդ միմեանս :

Իբրև խմբեցաւ պատերազմն , ահն կալաւ Սմբատ որդւոյն Վահանայ 'ի վերայ Մսուրայ , և պատահեցաւ նմա : Իսկ Մսուր տեսեալ եթէ պատանի է , քամահեաց զնա , և ասէ . Պարապաշտ հարճորդի , 'ի բաց կաց , զի 'ի պատերազմօղ արան ելանեմ անցանեմ : Եւ նա ասէ . Որդի սատանայի , յիրաւի է անունդ քո Մսուր . զի սուր քո չէ ինչ , և 'ի մարտընչել ընդ մանկանն[1] ծանիցես զպարտութիւն քո : Եւ ածեալ զսուրն՝ կտրեաց զգլուխ երիվարի նորա , և զնա յերկիր ընկեց . և յարձակեալ՝ էառ զգլուխն 'ի նմանէ . և 'ի վեր վերացուցեալ , ասէ . Փառք քեզ Տէր և տէր Կարապետ , որ յաղթեցեր հակառակորդիս : Եւ մինչ դեռ նա զայն ասէր , տասն այր պատեցին զՎահան . որպէս որք զանտառն հատանեն , այնպէս յանխնայ կոփէին և նոքա : Եւ սկսաւ պակասիլ Վահան . և ձայն բարձեալ , ասէր . Ո՞ւր ես Սմբատ որդեակ , հասիր յօգն ծերոյս : Զի էր ամաց ութսուն և ութից : Իսկ նորա քաջաբար 'ի վերայ յարձակեալ որպէս զարծիւ սրաթռիչ , ասէր . Օգնեա մեզ տէր Կարապետ : Եւ անդէն եհատ ըզգլուխ որդւոյն Մսուրայ , և ընդ մէջ ճեղքեալ՝ հանդերձ թիկամբն աջոյ 'ի բաց ընկենոյր : Եւ զօրացեալ Վահանայ , զվեց երիվարին գլուխն կտրեաց . և մնա-
նեաց ոմն 'ի ձեռս նոցա զզօրսն Պարսից , և փախըստական արարին զնոսա մինչև ցերեկոյն : Եւ 'ի յութհազարէն երեքհազար միայն գնացին առ Սախտանդ : Եւ նորա լուռ եղեալ մինչև ցմիւս ամն . և 'ի նոյն ամին վախճանեցաւ Վահան քաջն վրէժխնդիր 'ի վերայ եկեղեցւոյ , և ետ տանել զինքն 'ի Գլակայ վանսն . և կայ 'ի թաղման 'ի դուռն սրբոյ Կարապետին , առաջի սեմոցն :

Իսկ 'ի միւսում ամի զօրս կազմեալ գումարեաց

1 Յերկս օրինակս ընդ նորահին :

Վախտանգ քան հազար, և առաքեաց առ Սմբատ, եթէ կամ եկ՝ որ պատերազմիմք, և կամ հնազանդեաց և տուր հարկս ։ Իսկ նորա ժողովեալ տասն հազար այր, գնաց 'ի վերայ նորա յՂնդակ. և թողեալ զհինգ հազարն 'ի բլերն, որ կոչեն Մահու ագարակ, և ինքն գնաց հինգ հազարաւ ընդդէմ նորա՝՝ 'ի գրգռել զնա ։ Եւ առաքեաց Վախտանգ տասն հազար այր 'ի վերայ նորա, կարծելով թէ ինքն միայն է ։ Եկին զօրքն, և 'ի գիշերի պատեցին զնա. և նա կամէր 'ի գիշերի ելանել ընդդէմ, բայց արգելուլին զնա քահանայք դրան նորա ։ Իսկ նա ասէ. Վստահ եմ յանձ, թէ որովհետև ծառայեալ եմք սրբոյ Կարապետին միամտութեամբ, թէ ոչ թողու զմեզ 'ի ձեռանէ ։ Եւ ել ջահիւք 'ի վերայ զօրացն Պարսից. և յանկարծակի տեսին այր մի գիսաւոր, որ լոյս փայլէր 'ի հերաց նորա, և զաչս թշնամեացն կուրացուցանէր ։ Զոր տեսեալ քաջին Սմբատայ, ասէ ցզօրսն. Քաջալերացարուք, որդեակք, և մի երկնչիք. զի 'որ Կարապետն մեզ 'ի թիկունս հասեալ կայ, և ընդ մեր՝ ինքն պատերազմի ։ Եւ մի ոք անհաւատալի զիրսն կարծիցէ. զի ինքեանք սկսան մարտնչիլ ընդ միմեանս, և զմիմեանս սատակել. զի 'որ պատերազմէր ընդ նոսա ։ Եւ այնչափ կոտորեցին զնոսա, մինչև հեղեղատք արեանց ելանէին. որ և Արեւել կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ ։

Եւ իբրև վճարեցին 'ի կոտորելոյ զայնչափ բազմութիւն, երկերիւր այր համարով թողեալ զօրուցարարս այլոցն վասն առն՝ զոր տեսին 'ի գիշերին, զի և թշնամիքն եւս տեսին, և ինքն յուղարկեաց զերիվարսն նոցա 'ի Մուշն աւան՝ առ որդին իւր, որ կոչէր ըստ պապ անուանն՝ Վահան կամսարական, զի զհետևակս քաղաքին հեծեալս արասցէ, և յուղարկեսցէ փութով ։ Եւ նորա կազմեալ հեծեալս երկու հազար և հինգ հարեւր, հասնէ առ Սմբատ իշխանն ։ Իսկ նորա խոյս տուեալ աւուրս ութ, և պատրաստեաց զզօրս իւր. և յետ ութ աւուրն եկն եհաս Վախտանգն 'ի դաշտ անդր, և առ վաղիւն պատրաստեցան 'ի պատերազմ ։ Իսկ Սմբատ կոչեաց 'ի գիշերին երկու հազար այր հեծելոց, և անցոյց 'ի

տեղի թագաւորան զպարսկէն յետուստ կողմանէ, և 'ի բլերն յայս կողմանէ երեք հազար: Եւ յերկու կողմանիցն ռազմ գաղտ կարգեաց. և ինքն զութ հազար արանս բաժանեաց 'ի վեց ռազմին: Եւ ընդ առաւօտն կազմեցան. զի մի զգաղտ դարանսն գիտասցեն, փութապէս 'ի դիմի հարեալ՝ շարժեաց զնոսա 'ի վերայ իւր:

Իբրև ճակատեցան 'ի պատերազմն ընդ իրեարս, զառաջինսն յաղթահարեցին զՍմբատ: Իսկ նորա 'ի բլուրն ելեալ, ասէր. Ո՞ւր էք քաջք, յառաջ մատիք: Եւ յամ կողմանց 'ի վերայ յարձակեցան, և 'ի մէջ առին զզօրսն Պարսից. և խմբեցաւ պատերազմն ընդ իրեարս, մինչ զի ոչ գոյր հնար ճանաչել զմիմեանս, բայց միայն 'ի ձայն փողոցն և 'ի տեսս դրօշացն: Իբրև 'ի դիմի հարան Վախտանգ և Սմբատ, ասէ Վախտանգ. Եկաց հարճորդի. Թէպէտ և զբազումս ճնճեցեր, սակայն այսօր չպրծնուս 'ի ձեռաց քաջ արանցս, որ գէշ գէշ պատառեն զձեզ սուսերք մեր: Եւ Սմբատ ընդ մէջ անցեալ, էհար և կտրեաց զտռնապանս բարձից նորա, և կարեվէր խոցոտեաց, և մերձ տարաւ յընկենուլ զՎախտանգ: Եւ նորա ձգեալ[1] զանէգն, եհար զկնուրծն նորա. և ցցեալ, 'ի ներքս ոչ կարաց անցուցանել: Եւ Սմբատայ ձայնս արձակեալ, ասէր. Սուրբ Կարապետ, յայտնեա և այսօր զքեզ ծառայից քոց. զի վասն քո մեռանիմք 'ի վերայ հաւատացելոցս Քնի: Եւ բախեալ տիգաւ 'ի թիկունս նորա, և անց ընդ զրահսն 'ի ներքս, և էհան ընդ սիրտ նորա: Եւ հանեալ ըզսուրն՝ կտրեաց զգլուխ նորա, և ոչ կարաց ունել. զի զբազում մարդկան վազեաց զգլուխն Վախտանգայ:

Իսկ մի ոմն 'ի ծառայիցն նորա էառ զգլուխն նորա, և փախեաւ. և հասեալ Սմբատայ՝ եհար մըրճոմն 'ի վերայ գագաթանն, և դողեաց զսաղաւարտն, և գլխոյն ոսկրն փոսեալ՝ տեղի տայր սաղաւարտն մըրճին Սմբատայ, և հազիւ կարաց հանել: Եւ նորա հանեալ ընկէց զգլուխն, և ինքն մեռաւ: Եւ մեւս այլ ծառայի առեալ զգլուխն փախեաւ. և Սմբատ

1 Յերկուս օրինակս խոչ նա գրեցին Ձգեալ:

զհետ մտեալ, ասէ. Պարսիկք, մի անմտանայք. զի մինչև յայս անկաւ Մախատանգ, որ սրտացաւ ծառայքդ զգլուխդ առեալ փախչիք. ապա գիտասջիք թէ ձեզ այդպէս պարտ է լինել: Նա ձգեալ ծառային զգլուխն 'ի կուրծմն Սմբատայ, և ասէ. Տար խորովեա և կեր զդա. վա՜յ ձեզ, որ այդ վաղ ոչ սպանէք: Նա Սմբատայ առեալ զգլուխն, և զհետ մտեալ ծառային, ասէ. Ո՜վ տիրատեաց պարսիկ, զգլուխդ քո ընդէ՞ր ոչ փոխանակեցեր տեառն քո: Որդ որովհետև տիրատեաց էք, ես բառնամ զգլուխ քո 'ի քէն: Նա եհար զնա տիգաւն 'ի սիրտն, և անցոյց զտէգն յայնկոյս. և ընկեցեալ յերիվարէն, կտրեաց զգլուխ նորա. և դարձաւ մեծաւ յաղթութ̃ 'ի բլուրն: Նա զօրքն շուրջ պատեալ 'ի վայրին զպարսիկսն սպանին. և ոչ մնացին 'ի նոցանէ, բայց այնոքիկ՝ որք առ ուղտուցն բանակին էին արք չորեքհարեւր. զորս ոչ հրամայեաց սպանանել, զի փախստականք էին. բայց էառ 'ի նոցանէ հազար և քառասուն ուղտ, և ութհազար ընդ ձի և ընդ ջորի:

Նա խուռն վճարեցաւ պատերազմն, հրամայեաց ծածկել զնոսա 'ի ձորս և 'ի հեղեղատս. և կոչեցաւ բլուրն այն Մահու բլուր: Նա Սմբատ առեալ ըզզօրսն, գնաց 'ի վերայ քաղաքին Պորպայ 'ի գիշերի: Նա մտեալ զօրացն 'ի տունսն, զորս և գտին պարսիկս լեզուաւ՝ սատակէին. և զքիթսն կտրեալ 'ի շարի արկանէին, և բերէին առ Սմբատ: Նա համարեալ զքիթսն, գտանէին սպանեալ պարսիկք՝ ընդայր և ընդ կին և ընդ մանկտի՝ չորեք հազար:

Իսկ զորդին Մախատանգայ և զկինն առեալ տարան յՈւյծից բերդն, զոր յառաջ Ործուխս կոչէին, 'ի պահել զնոսա անդ: Նա յղեալ առ Պարսից թագաւորն Խոսրով, և ասէ. Տուր ինձ երկոտասան տարւոյ հարկ, որ զօրքդ քո զիմ երկիրս զխոտն և զհացն կերան, և զփայտն այրեցին, և զջրոյ՝ զոր արբին ըզգինն, և զտաճարացն զգինն՝ զոր իմ հայրն այրեաց վասն քո Պայլ Մահան. և դարձեալ զապարանի[1] գինան վաթսուն հազար դահեկան, որ զքո զօրացն

1 Յերկուս օրինակս պակասի :

զգլխաւորն հալածն և զարիւնաթաթախ հանդերձն լուանալ տուաք և ագաք ։ Ապա թէ ոչ, զամ հարեւր մարդով 'ի վերայ քո, և զամ պարսիկս գերեալ 'ի Տարօն ածեմ, և 'ի քո աստուածքդ շուն խառնեմ, որ փոխանակ դոցա հաչեն 'ի ձեզ ։ Արդ փութով, զոր ինչ ասացի քեզ, արձակեա. ապա թէ ոչ, տեսանես թէ զի՞նչ անցք անցանեն ընդ ձեզ ։ Իսկ նորա լուեալ, ծաղր առնէր զՍմբատ. և ոչ գրեաց պատասխանի թղթոյն Սմբատայ ։

Բայց եղբայրն Սախտանգայ Մուրէն, առեալ հարեւր հազար դահեկան, և հինգհազար այր, եկն 'ի Տարօն՝ գնել զկինն և զորդին Սախտանգայ ։ Եւ ընդ առաջ գնացեալ Սմբատայ, ընկալաւ զՄուրէն եղբայր նորա սիրով, և եած 'ի Մուշ ։ Եւ կացեալ աւուրս տասն, խնդիր արար Մուրէն եղբօրորդւոյ իւրոյ՝ թէ ո՞ւր է ։ Իսկ նոքա ցուցին զեղբայրն՝ թէ մեռեալ է. և նա ասէ. Ո՞րդ այծարած է թէ դիւահարեալ ։ Եւ ծիծաղեալ Սմբատայ ընդ աղի բանսն Մուրէնայ, առաքեաց և ետ բերել զկինն և զորդին առաջի իւր ։ Եւ իբրև ածին, ասէ Մուրէն. Իշխան հզօր 'ի վերայ աշխարհիս Հայոց, տա՞ս զսոսա Պարսից արքային տուրս ։ Իշխանն ասէ. Պարսից արքային և մեռեալ շուն մի ոչ տամ, որ ձագ ուտէ՝ առանց գնոյ, թող թէ զդոսա ։ Բայց դու գնել թէ կամիս, քաջ տամ. ապա թէ ոչ, գնացէք դուք երեքեանդ յՌշտունիս այծ արածեցէք, և բերդին ծառայութիւն արարէք, և զիմ հացս կերայք աներախտիս ։

Իսկ Մուրէն քանզի իմաստուն այր էր, ասէ. Ո՛վ բարեպաշտ և հզօր իշխան, թէ և զշուն դարապասիդ քո արածել տայիր, դեռ պարծանս է մեզ՝ որ 'ի դրան քում կայաք, թող թէ այծ արածել ։ Բայց թէ լսէք մեզ, առէք 'ի մէնջ հարեւր հազար դահեկան, և երկու հազար ուղտ, և վեց պարսիկ ձի. և մեզ տուրս տուք զայս կինս և զմանուկս ։ Իշխանն ասէ. Օ այդ՝ որ բերեալ ես, այդ մեր է. զի դքո դլուխդ կտրեմ, և զոր ունիս՝ յիս առնում ։ Բայց թէ դոքա քեզ պիտոյ են, դու քրիստոնեայ լեր և կնքեաց, և զիս առ և 'ի պարսիկս գնա, և դոքա քեզ. ապա թէ ոչ, ձեզ այլ հնար իմացէք ։ Իսկ

Մուրէն բերեալ էր զհարիւր հազար դահեկանսն և զուղտսն և զձիսն առաջի, և ասէ ցիշխանսն. Չքաղիկ է տուրս: Իսկ նա ասէ. Հաւանիմ տրոցդ, բայց հարիւր և ութսուն հազար փայտ են տարեալ 'ի Ռաղքէայ, և չորեքհարիւր հազար դահեկանի խոտ են կերեալ 'ի դաշտէդ, և վաթսուն հազար դահեկանի՝ որ զերդս և զեզջերուս և զնապաստակ երկրիս որսացեալ են և կերեալ. զջրոյ և զհացի գինն թողում: Բայց զանոյշ գինին Աշտոց[1] և Մանեայ և զՄոխրայ այս երկու տարի է՝ որ յինէն կորեալ էին, և խնքեանք արբին, զայն թող տամ. և զվեց զաւառին հարկն՝ զոր առեալ են, և զքաղաքին մուտն՝ զոր կերեալ են չորեքհարիւր դահեկան, զայդ ա͞մ թող բերեն. և դու քրիստոնեայ լեր, և զիս 'ի պարսիկս տար, և դոքա քեզ:

Տրտմեցաւ Մուրէն, և ոչ կարաց խօսել զերիս աւուրս: Եւ ապա արձակեաց իշխանսն առ նա, և ասէ. Մի՛ տրտմիր, զի ըստ քո կամացդ առնեմ զա͞մ ինչ. բայց արի անցանեմք յայնկոյս, և յուխտս երթամք 'ի վանս իմ, զոր շինեաց հայրն իմ: Եւ առեալ զՄուրէն անցին յայնկոյս Արածանոյ, և զկինն և զորդին 'ի հետ տարան: Բայց զի նենգել կամէր պարսկին, զկին և զորդին և զՎահան կամսարական յայնկոյս թողեալ, զի որ 'ի նա մնասցի՝ նա սպանցէ: Եւ ինքն թողեալ զզօրս իւր 'ի Մեղտի չորեք հազար այր, և զՊարտիցն յանդաստանն վանացն՝ զոր Աշտից դեւղն կոչեն, և առեալ չորեքհարիւր այր ընտիր զինուորաւ, և չորեքհարիւր զնորայն, և գնացին երկոքեանն 'ի վանսն: Եւ իբրև եկին առ Թաղուցեալ խաչն, իջին յերիվարացն, և գնային հետևակ 'ի վանսն. քանզի չէր հնար ումեք երիվարաւ ընդ այն տեղւոյն 'ի վեր անցանել: Նոյնպէս և յարևելից կուսէ ձորոյն 'ի սորոտ զառ 'ի վերին մինչև յեկեղեցին չիշխէր ոք գալ. զի թէ Տրդատ և ս͞րն Գրիգոր ոչ իշխէին գալ անդ երիվարաւ, ապա ո՞վ այլ ոք:

Արդ իբրև մերձեցան 'ի վայրս վանացն, ընդ առաջ եկին պաշտօնեայքն, և արգելուին զնա վասն

1 Յերկուս օրինակս ղխոտոտանոյ գինին:

Մուրենայ։ Իսկ Մմբատ թարկայեալ ասէր. Աստուած-հեռանք պարսիկք այնպիսի պիղծք էք, որ և մայրեացն արժանի չէք, դուք և կանանց արժանի ընդդէր էք։ Այլ յարձակեալ 'ի վերայ նոցա Մ̀ատաղայ իշխանին Պալունեաց, եհար սրով և կոտորեաց զգլուխն Մուրենայ։ Այլ զերկու իշխանսն Պարսից կախեալ զծառայն խեղդեցին, և ինքեանք դարձան յերիվարսն. քանզի զօրք իշխանին Պալունեաց թագուցեալ էին 'ի բլուրն 'ի փոքր ամրոցին 'ի Մեծամօրին, արք երեքհարիւր, 'ի ներքոյ Ընդակայ. և հեծեալ նոցա յերիվարսն, մինչև իջուցին 'ի Մեծամօր։ Այլ որք 'ի դարանին էին, ընդդէմ ելին. և 'ի մէջ առեալ զայն չորեք հարիւր արսն կոտորեցին, և ինքեանք իջեալ յայլ զօրսն գնացին։ Արդ այնք, որք յամրոցին Արտից գեղջն էին, 'ի գիշերին 'ի դուրս ելեալ՝ իջին 'ի վերայ Պարսից. և կոտորեալ զերիվարս նոցա առեալ քան զերկու հազար և հինգ հարիւր, և հանին 'ի Սրոց[1] ձոր։ Իսկ զօրացն Պարսից զհետ մտեալ գողոցն, և հասեալ յայն տեղի՝ որ կոչի Պողոց աղբեւր, և դարձան 'ի վերայ նոցա ձիաւորքն[2], և հարին պարսաւքրօք և աղեղամբք հինգհարիւր և քսան այր. և զերիվարսն առին և խառնեցին յայլսն, և եղեն երեք հազար ձի։

Իսկ ոմանք հետևակեալք ձորամուտք եղեն 'ի Պարսից զօրացն. և գնացին յանտառն, և անկան 'ի վերայ ձիագողոցն, և սկսան կոտորել։ Իսկ որ աւագն էր 'ի ձիագողսն, որոյ Արեմ[3] կոչէին, դարձաւ ընդդէմ. և սուր հանեալ՝ ինքն միայն պատերազմեցաւ, մինչև դարձան ընկերք նորա։ Այլ իբրև նոքա դարձան՝ Արեմ մեռաւ, զի հարին նետիւ 'ի սիրտ նորա. և թաղեցաւ 'ի նոյն ձորն, և կոչեցաւ անուն ձորոյն այնուհետև Արեմաձոր[4]։ Այլ ընկերքն քարիւ և նետիւ ընդդէմ դարձան, և սպանին զգազագունն. և այլքն փախստական եղեալ՝ եկին ժողովեցան 'ի մի վայր, և իջեալ ճաշէին։

1 Ցերկուս օրինակս 'ի Սրէնոյ ձորն։

2 Ցերկուս օրինակս ձիագողք։

3 Ցերկուս օրինակս Անրէմ. որպէս և 'ի ստորև։

4 Ցերկուս օրինակս Անրէմաձոր։

Մուշէն բերեալ էր զհարեւր հազար դահեկանսն և զուղտսն և զձիոյսն առաջի, և ասէ ցիշխանսն. Նշանակ է տուրքս: Նոքա ասեն. Ժամանեմք տրոցդ, բայց հարեւր և ութսուն հազար փայտ են տարեալ ՚ի Պարքէսյ, և չորեքհարեւր հազար դահեկանի խոտ են կերեալ ՚ի դաշտէդ, և վաթսուն հազար դահեկանի՝ որ զերս և զեղջերուս և զնապաստակս երկրիս որսացեալ են և կերեալ. զՋրոյ և զհացի գինս թողում: Բայց զանոյշ գինին Նչորոց [1] և Սալնայ և զՄօխրայ այս երկու տարի է՝ որ յինէն կորեալ էին, և ինքեանք արբին, զայն թող տան. և զվէց զաւառին հարկն՝ զոր առեալ են, և զքաղաքին մուտսն՝ զոր կերեալ են չորեքհարեւր դահեկան, զայդ ա̃մ թող բերեն. և դու քրիստոնեայ լեր, և զիս ՚ի պարսիկս տար, և դոքա քեզ:

Տրտմեցաւ Մուշէն, և ոչ կարաց խօսել զերկս աւուրս: Եւ ապա արձակեաց իշխանսն առ նա, և ասէ. Մի տրտմիր, զի ըստ քո կամացդ առնեմ զա̃մ ինչ. բայց արի անցանեմք յայնկոյս, և յուխտս երթամք ՚ի վանս իմ, զոր շինեաց հայրն իմ: Եւ առեալ զՄուշէն անցին յայնկոյս Արածանոյ, և զկինն և զորդին ՚ի հետ տարան: Բայց զի նենգել կամէր պարսկին, զկինն և զորդին և զՄահան կամսարական յայնկոյս թողեալ, զի որ ՚ի նա անկցի՝ նա սպանցէ: Եւ ինքն թողեալ զզօրս իւր ՚ի Մեղտի չորեք հազար այր, և զՊարսիցն յանդաստան վանացն՝ զոր Արտից գեւղն կոչեն, և առեալ չորեքհարեւր այր ընտիր զիւրեաւ, և չորեքհարեւր զնորայն, և գնացին երկոքեանն ՚ի վանսն: Եւ իբրև եկին առ Թագուցեալ խաչն, իջին յերիվարացն, և գնային հետևակ ՚ի վանսն. քանզի չէր հնար ումեք երիվարաւ ընդ այն տեղւոյն ՚ի վեր անցանել: Նոյնպէս և յարևելից կուսէ ձորոյն ՚ի ստորոտ զառ ՚ի վերին մինչև յեկեղեցին չիշխէր ոք գալ. զի թէ Տրդատ և նմա Գրիգոր ոչ իշխէին գալ անդ երիվարաւ, ապա ո՛վ այլ ոք:

Արդ իբրև մերձեցան ՚ի վայրս վանացն, ընդ առաջ եկին պաշտօնեայքն, և արգելուին զնոսա վասն

[1] [illegible] գինին:

Մուրենայ ։ Իսկ Սմբատ բարկացեալ ասէր ․ Արամ-հեան պարսիկք այնպիսի պիղծք էք, որ և մայրեացն արժանի չէք, դուք և կենաց արժանի ընդէր էք ։ Նա յարձակեալ 'ի վերայ նոցա Սարադայ իշխանին Պալունեաց, եհար սրով և կոտրեաց զգլուխն Մուրենայ ։ Նա զերկու իշխանսն Պարսից կախեալ զծառայն խեղդեցին, և ինքեանք դարձան յերիվարսն ․ քանզի զորք իշխանին Պալունեաց թագուցեալ էին 'ի բլուրն 'ի փոքր ամրոցին 'ի Մեծամօրին, արք երեքհարիւր, 'ի ներքոյ Անդակայ ․ և հեծեալ նոցա յերիվարսն, մինչև իջուցին 'ի Մեծամօր ։ Նա որք 'ի դարանին էին, ընդդէմ եկին ․ և 'ի մէջ առեալ զայն չորեք հարիւր արսն կոտորեցին, և ինքեանք իջեալ յայլ զօրսն գնացին ։ Արդ այնք, որք յամրոցին Արտից գեղջն էին, 'ի գիշերին 'ի դուրս ելեալ՝ իջին 'ի վերայ Պարսից ․ և կոտրեալ զերիվարս նոցա առեալ քան զերկու հազար և հինգ հարեւր, և հանին 'ի Արոց[1] ձոր ։ Իսկ զօրացն Պարսից զհետ մտեալ գաղտցն, և հասեալ յայն տեղի՝ որ կոչի Դրողոց աղբեւր, և դարձան 'ի վերայ նոցա ձիատարքն[2], և հարին պարտաքարօք և աղեղամբք հինգհարեւր և քսան այր ․ և զերիվարսն առին և խառնեցին յայլսն, և եղեն երեք հազար ձի ։

Իսկ ոմանք հետևակեալք ձորամուտք եղեն 'ի Պարսից զօրացն ․ և գնացին յանտառն, և անկան 'ի վերայ ձիապանացն, և սկսան կոտորել ։ Իսկ որ աւագն էր 'ի ձիապանսն, որոյ Սրեմն[3] կոչէին, դարձաւ ընդդէմ ․ և սուր հանեալ՝ ինքն միայն պատերազմեցաւ, մինչև դարձան ընկերք նորա ։ Նա իբրև նոքա դարձան՝ Սրեմ մեռաւ, զի հարին նետիւ 'ի սիրտ նորա ․ և թաղեցաւ 'ի նոյն ձորն, և կոչեցաւ անուն ձորոյն այնուհետև Սրեմաձոր[4] ։ Նա ընկերքն քարիւ և նետիւ ընդդէմ դարձան, և սպանին զբազումս ․ և այլքն փախստականք եղեալ՝ եկին ժողովեցան 'ի մի վայր, և իջեալ ճաշէին ։

1 Յերկուս օրինակս Դ. Արենոյ ձորն ։

2 Յերկուս օրինակս ձիաւորք ։

3 Յերկուս օրինակս Մրեմ. որպէս և 'ի սորա ։

4 Յերկուս օրինակս Մրրեմաձոյր ։

Մուրէն բերեալ էր զհարեւր հազար դահեկանսն և զուղտսն և զձիսն առաջի, և ասէ ցիշխանսն. Ահաւադիկ է տուրսդ: Իսկ նա ասէ. Հաւանիմ տրոցդ, բայց հարեւր և ութսուն հազար փայտ են տարեալ 'ի Պաղքէայ, և չորեքհարեւր հազար դահեկանի խոտ են կերեալ 'ի դաշտէդ, և վաթսուն հազար դահեկանի՝ որ զեզն և զեղջերուս և զնապաստակ երկրիս որսացեալ են և կերեալ. զջորս և զհացի գինն թողում: Բայց զամնոյշ գինին Աշորոց[1] և Սալնայ և զՄոխրայ այս երկու տարի է՝ որ յինէն կտրեալ էին, և ինքեանք արբին, զայն թող տամ. և զվեց զաւառին հարկն՝ զոր առեալ են, և զքաղաքին մուտն՝ զոր կերեալ են չորեքհարեւր դահեկան, զայդ ամ թող բերեն. և դու քրիստոնեայ լեր, և զիս 'ի պարսիկս տար, և դոքա քեզ:

Տրտմեցաւ Մուրէն, և ոչ կարաց խօսել զերիս աւուրս: Եւ ապա արձակեաց իշխանսն առ նա, և ասէ. Մի՛ տրտմիր, զի ըստ քո կամացդ առնեմ զամ ինչ. բայց արի անցանեմք յայնկոյս, և յուխտս երթամք 'ի վանս իմ, զոր շինեաց հայրն իմ: Եւ առեալ զՄուրէն անցին յայնկոյս Արածանոյ, և զկինն և զորդին 'ի հետ տարան: Բայց զի նենգել կամէր պարսկին, զկին և զորդին և զՍահան կամսարականն յայնկոյս թողեալ, զի որ 'ի նա անկցի՝ նա սպանցէ: Եւ ինքն թողեալ զզօրս իւր 'ի Մեղտի չորեք հազար այր, և զՊարտիցն յանդաստանն վանացն՝ զոր Արոյց գեւղն կոչեն, և առեալ չորեքհարեւր այր ընտիր զիւրեաւ, և չորեքհարեւր զնորայն, և գնացին երկոքեանն 'ի վանսն: Եւ իբրև եկին առ Թագուցեալ խաչն, իջին յերիվարացն, և գնային հետևակ 'ի վանսն. քանզի չէր հնար ումեք երիվարաւ ընդ այն տեղւոյն 'ի վեր անցանել: Նոյնպէս և յարևելից կուսէ ձորոյն 'ի տորոտ զառ 'ի վերին մինչև յեկեղեցին չիշխէր ոք գալ. զի թէ Տրդատ և Սրբն Գրիգոր ոչ իշխէին գալ անդ երիվարաւ, ապա ո՞վ այլ ոք:

Արդ իբրև մերձեցան 'ի վայրս վանացն, ընդ առաջ եկին պաշտօնեայքն, և ողջունէին զնա վասն

1 Յերկուս օրինակս գխոտածոյ գինին:

Իսկ ոմանք յՍղկանայ ելեալ գնացին որսոյ պատճառանօք երկերիւր և յիսուն այր։ Իբրև տեսին՝ զի յանհոգս էին իջեալ պարսիկքն, գողաբար յարձակեցան ՚ի վերայ, և ոչ ոք կարաց յերիվարն ելանել. այլ ՚ի շուրջ եկեալ, և ՚ի սեղան անդր սպանին հինգհարիւր և ութ այր. և վասն որ անդ ժողովեալ սպանին, կոչեցաւ անուն տեղւոյն Խողովս։

Եւ մինչ այս այսպէս գործեցաւ, Սմբատ և իշխանն Պալունեաց Թագեան ՚ի ձոր ուրեք։ Եւ առաքեցին զոմն ՚ի Սեղտի, թէ փութացէք գալ ՚ի վերա դոցա. և ինքեանք առաքեցին առս հարիւր, գրգռել զզօրսն Պարսից։ Զոր տեսեալ զօրացն, գրոհ տուեալ զհետ՝ մի մի հասանէին։ Իբրև եկին զօրքն առ Սմբատ, ասեն. Տուք զձեզ ՚ի բլուրն, զի տեղին աջող է պատերազմի. և անձնապահ լերք, մինչ չև մեր զօրն հասանէ։ Եւ նոցա ՚ի բլուրն ելեալ, և զօրացն Պարսից բազմացեալ ՚ի վերայ Սմբատայ և Վարազայ, և նոցա կրկնեալ ծունր ա̃յ, յօգնութ̃ն կոչելով զսբ Կարապետն. Յիշեա, ասեն, զերախտիս մեր. և որպէս ՚ի հեռուստ օգնեցեր, ՚ի մօտոյս մի վերջանար ՚ի մէնջ։ Եւ եհաս ՚ի թիկունս օգնականութիւն ա̃յ։

Եւ փողոց տուեալ ՚ի վերայ բլերն, Սմբատայ յաջ թեւն, և Վարազայ յահեակն, և սկսան արեամբ թաթաւել ինքեանք և երիվարք իւրեանց։ Եւ մածաւ սուրն ՚ի ձեռսն Սմբատայ, և ոչ կարաց հանել. քանզի մածեաւ արիւնն ընդ սուրն և ընդ ձեռնատեղին, և կոտորեցաւ։ Եւ իբրև տեսին պարսիկքն՝ եթէ ոչ կարաց առնուլ այլ սուր, ձայն տուեալ՝ ասէին ցմիմեանս. Փութասջիք, զի մածեալ է ձեռն քաջին, և կապեաց զնա ա̃ծն իւր, և սուրն ՚ի ձեռսն կոտորեալ է։ Եւ պատեցին զնա բազումք. և իբրև զփայտ չոր, որ ՚ի ձեղքիլն ճարճատէ, այնպէս ճարճատէին ՚ի վերայ գլխոյն Սմբատայ զէնք։ Իսկ նա բարձր ձայնիւ ասէր. Վա՜յ քաջութեդ ձերոյ, զի ոչ կարացիք հերձուլ զգլուխ իմ։ Զայս ասաց, զի յիշելիք լիցի բանն։ Բայց իբրև գիտաց՝ եթէ կարի սաստկացան ՚ի վերայ նորա, ձայն բարձեալ՝ ասէ. Ո՞ւր ես բազուկ քաջ, և մուրճ հզօր ընդդէմ թշնամեաց,

դաւաճան իմոյ ծերութեանս, իշխան Պալունեաց. յառաջ մատիր որպէս քաջ արծուի, զի անդեղք և թուէճք պատեցին զիս: Եւ նորա թողեալ զահեակ թեւն յորդւոյն իւր Վահան, որ զՎահանովնան շինեաց, և ինքն քաջաբար որպէս զարծուի՝ կանչեալ դիմեաց 'ի վերայ: Որ և 'ի դողման հարեալ ըմ̃ երկվարացն, և հասեալ 'ի թիկունս Սմբատայ, և թախեալ զտէգն 'ի վերայ պարսկին թիկանն, և անդէն եհան ընդ ողն երիվարին. և այլ ոչ ժամանեաց հանել զտէգն: Զոր ծաղր արարեալ, ասէր. Երթ չափեա զտէգդ՝ թէ քանի՞ կանգուն է. մի՞ ոք սուտ ասէ՝ թէ երեք գիրկ է, և խաբէ զքեզ: Եւ անդէն մեռաւ:

Իսկ Սմբատայ ելեալ յեզր պատերազմին, և ձախ ձեռամբ պրկեաց պարսիկ մի, և ետ զենուլ 'ի վերայ ձեռինն և սրոյն, զի իջցէ ջերմ արիւնն և թուլացուսցէ զբռնատեղն: Եւ փոխեալ այլ սուր, և ելեալ յերիվարն. և իբրև հեծաւ, ետես զի հազար այր պատեցին զնա կրկին, և 'ի մէջ առեալ զհինգհարեւրան: Եւ իբրև գիտացին՝ եթէ կացեալ են երիվարքն, էհար պարսիկ մի և ընկէց, և զերիվարն առեալ մատոյց Վարազայ իշխանին, և ասէ. Էջ և հեծիր իշխան Պալունեաց: Իսկ նորա փոխեալ զձին, նստաւ 'ի վերայ նորա. զոր տեսեալ զօրացն՝ զարմացան. և այսպէս արարեալ 'ի մէջ ահաւոր պատերազմին փոխեցին զերիվարս իւրեանց: Զի որչափ և զօրքն թագմանայինն, նոքա յանհոգս լինէին 'ի մէջ նոցա. զի այնչափ կուտեցան 'ի վերայ, որ և տեղի չգտանէին՝ որ յեզր ելանէին:

Եւ իբրև սկսան ոմանք երկմտել 'ի զօրացն Սմբատայ, ըստ տեսչութեան այ̃ տեսին զմեւս Սմբատ՝ զի գայր, որ էր իշխան Հաշտենից. և ածէր զՎահան կամսարական զորդին Սմբատայ, և վեցհազար այր ընդ նմա: Զոր տեսեալ Վարազ իշխանին, աղաղակեաց և ասէ. Վաջորդի Վահան, ո՞ւր էիր՝ որ ոչ վաղ եկիր յօգնութիւն: Իսկ Վահան ձայն բարձեալ, ասէր հանդերձ արտասուօք. Վա՜յ այն տառապեալ հայրն իմ ծերունի, եթէ փոխեցաւ առ տէր 'ի հանգիստ: Իսկ Սմբատայ լուեալ, ասէր. Սուրբ

Սպարապետն ինձ 'ի Թիկունս հասեալ էր, և նա 'ի ձեռաց անօրինաց մեռանելի: Իսկ նորա գոհացեալ զնայ, և 'ի դիմի հարեալ՝ կոտորեցին փողոց, անցին 'ի ներքս. և պարզեցին զմի Թևն նա, և զմիւսն իշխանքն Հաշտենից Սմբատ. և յինքեանս առեալ զպատերազմն, սկսան կոտորել զպատերազմագլուխսն: Եւ 'ի վերայ շրջեալ, զմեւս Թևն Մահանայ բոլորեալ 'ի մէջ առեալ զզօրսն Պարսից, կոտորեցին մինչև յերեկոյն:

Եւ իբրև 'ի մուտս եղև արևն, մնացին 'ի Պարսից չորեքարիւր այր, որք ընդ միջոցն ելեալ փախեան. և քանզի մնացեալք էին երիվարք նոցա, երԹեալ մտին 'ի ձոր մի, և Թագեան ննջեցին խոյս առեալ[1] մինչև 'ի մեւս աւուր հասարակն: Զօր եկեալ զօրացն գտին, և ջուր ցանեալ 'ի վերայ նոցա՝ զարԹուցին, և առեալ տարան զնոսա 'ի Մեղտի. և կոչեցաւ տեղին այն Թմբրաձոր: Իսկ Սմբատ հրամայեաց ընդիակունսն կուտել 'ի վերայ իրերաց 'ի բլուրս և ավասն Սարագայ կոտորածին՝ կոչեցաւ տեղին այն Սարագաբլուր[2]: Եւ ինքեանք եկեալ իջաւանեցան 'ի վանաց գեւղն, զոր կոչեն Սեւնաց վայրք. և իբրև մտին 'ի գեւղն, ընդ առաջ եղեն նոցա պարաւանդքն, և երգս առեալ բազում ինչ իրաց՝ գովէին: Եւ և յետոյ 'ի հուտել դիականցն և յորդնել, չէր հանեալ ատէին.

Եերան գագանք զմարմինս դիականցն Սարագայ և գիրացան: Սուզ կերեալ, ուսաւ որպէս զգայլ. և աղուէս հպարտ եղև քան զառեւծ: Գայլ, քանզի շատակեր էր, պայԹեաց. և արջ, քանզի զգա տատէն՝ չմնայ առ ինքն, 'ի սովոյ մեռաւ: Ագռաւքն զի ագահք էին, նստան և այլ ոչ կարացին վերանալ. մկունք, քանզի շատ կրեցին 'ի ծակսն, ոտքն մնաչեցան:

Զայս տմ ասացին, և 'ի դէպ էր վասն կերակրոց. որ և կոչեցաւ անուն գեղջն Հ իրակաւնեք:

Իսկ զարան՝ որ 'ի Մեղտի տարան՝ բժշկեալ 'ի ցաւոց վիրացն, և ետ նոցա զանձս և երիվարս և զէնս.

1 Յերկուս օրինակս խոյացոփեալ:
2 'Ի միում ևեԹ օրինակի Վարագաբլուր:

և յղեաց փնտռել 'ի պալատին : Իսկ ինքեանք ելեալք 'ի տէրունական տունն, ընծայս բազումս մատուցին նմա 'ի տէր Կարապետն, և ցնծութեամբ դարձան 'ի տուն իւրեանց :

Իսկ 'ի սոյն աւուրս վախճանեցաւ երանելին Ստեփաննոս, և կայ առ այլ հարսն 'ի Հայրաբլուրն : Իսկ տուեալ Սահանայ զեպիսկոպոսութիւն Մամիկոնենից և զՊալունեաց և զՀաշտենից, և եկն 'ի վանսն Գլակայ. և ձեռնադրեցին հայր վանացն զԵպիփան, որ 'ի Պռունայ դաշտէն էր եկեալ յանապատ, և բնակեալ 'ի վայրսն եկեղեցւոյն : Սա եկաց քսաներորդ երկրորդ[1] զկնի Ստեփաննոսի. և կացեալ 'ի վանականութեան ամս քսան, և գնաց 'ի ժողովն՝ զոր արար Հերակլ յինն և 'ի տասն ամի թագաւորութեան իւրոյ[2], և նզովեցին զնա Հերետիկոսունս. և եպիսկոպոսն Հաշտենից հալածական լինէր յերկիրն Յունաց[3] :

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ ՊԱՏՃԵՆԻՆ

Վասն գալոյն Տիգրանայ, և կատարածին՝ որ 'ի Հանդրնկեցն :

ՊԱՐՉԵԱԼ այլ զօր առաքեաց Խոսրով 'ի վերայ ապստամբ տանն Մամիկոնենից, զՏիգրան զօրավարն մեծ՝ քսան հազարաւ : Իբրև եկին յՄշպահունիս, կոչեաց զՍմբատ առ ինքն. իսկ նա յղեաց զորդին իւր զՎահան կամսարական, տեսանել թէ զինչ խնդրէ : Իբրև գնաց իմացաւ զիրսն, արձակեաց պատասխանի առ հայրն և ասէ. Սա բազում անգամ բարիս խոստանայ, և բազում անգամ չարիս. բայց խնդրէ զնշխարս Մուշեղայ իշխանին և զքո հօրն Վահանայ, և զկնոյն Վախթանգայ և զորդին՝ զոր սպանին 'ի պա-

1 Յերկու օրինակս քսաներորդ :

2 Յերկուս օրինակս յինն ամի իւրոյ :

3 Յայսմ վայրի անկատարան են երեքեան օրինակք և աղաւաղեալ :

տերագմին Սարագայ[1] ։ Ապա թէ ոչ, գամ 'ի տեղին, ասէ, ուր հաւատք ձեր են. զայն քրեմ և աւերեմ, և կրակատուն առնեմ զեկեղեցիս ձեր, և ըզձեզ 'ի դուռն արքունի խաղացուցանեմ ։ Արդ զայս ասաց, և ինքն ընդ Հաշտեանս կամի գալ 'ի վերայ. այլ ես գնամ զհետ նորա. և դու ժողովեա զզօրս մեր, և գնա 'ի սուրբ Կարապետն, աղաչեա զկրօնաւորսն՝ աղօթս առնել ։ Ողջ լեր 'ի Տր ։

Իսկ Սմբատայ լուեալ զայս, առեալ զթուղթն՝ գնաց առաջի սրբոյ Կարապետին. տարածեաց ըզձեռսն առաջի սրբոյ սեղանոյն, սկսաւ լալ և ասել. Զարթիր Տր, և զարթո զզօրութիւն քո. տես Տր, մի լռեր Տր, և մի դադարեր. քանզի կարի խրոխտացաւ թշնամին 'ի վերայ մեր, այլ կամք քո եղիցին. բայց սակայն աղաչեմք, յիշեա զջանն մեր՝ որ 'ի վերայ քո վասն ուխտին սրբութե մերոյ, որով փառաւորեսցի անուն քո Տր ։ Եւ զայս ասացեալ, ետ բերել երկոտասան թուղթ, և դնել առաջի բեմին մինչև պատարագ մատուցանելին. և ապա առեալ ասէ. Տէր, հաւատամք 'ի քեզ, թէ և այս սուրբս եղիցին խմոր այլ սուսերաց, և հրամանաւ քով յաղթեսցուք նոցա ։ Ո՛վ Տր, նեղեցաք ձանձրացաք 'ի կոտորելոյ անգամ զանօրէնսն. նեղեցան և որք զսուսերս մեր 'ի ժանկոյ և յարեանցն սրբեցին. այլ յուսամք՝ թէ որպէս արարեր, և առնես ։

Եւ ելեալ գնաց ժողովել զզօրսն, ինն հազար ինն հարիւր և քառասուն այր. և երթեալ էջ 'ի Հաշտեանս, 'ի գեւղն՝ որ Գիրեհն[2] կոչեն, 'ի Ջրառատ վայրսն ։ Եւ Տիգրան եկեալ 'ի Հոնընկեցն իջանէր. և առաքեաց առ Սմբատ, և ասէ. Արի եկ առ իս, և մի երկնչիր, և առ յինէն զանձս և մեծութիւս, և եդից պսակ 'ի գլուխ քո, և արարից զքեզ մարզպան Հայոց, միայն լոկ զոսկերսն Մուշեղայ և զՎահանայ տուր ցիս ։ Իսկ նորա կալեալ զպատգամաւորսն, հրամայեց շամփուր մի երկաթի, և եդ պսակ շուրջ զճակատովն, և ասէ. Կաց տեսանեմ՝ թէ վասն քո զինչ պարգևս գայցէ ինձ, որ ես քեզ պսակ եդի ։ Եւ

1 Յերկս օրինակս Վարագայ ։ 2 Յերկս օրինակս Կրէհն ։

Հրամայեաց ունել զամ արան՝ որ ընդ նմայն էին եկեալ, և կտրեաց զգլուխս նոցա մինչև ցվեց ժամ աւուրն. և կոչեցաւ տեղին այն Մօղուց գերեզմանն, որ է Մոկկունս[1]:

Իսկ Սմբատայ ելեալ ’ի վերայ լերինն, որ Սեմավայրս[2] ասեն. բանակեցաւ հանդէպ Տիգրանայ: Այլ իբրև երեկոյ եղև, Մահան կամնարական որդին Սմբատայ յարուցեալ կտրեաց զգլուխ որդւոյն Տիգրանայ և զերից իշխանացն, զի էին ’ի միում խորանի. և առեալ զգլուխ նոցա, եկն առ հայրն իւր, և դարձեալ եկն ’ի նոյն տեղին. և գնացեալ գաղտուկթք[3] եմուտ ընդ սարրաս խորանին առ Տիգրան: Իսկ նորա տեսեալ զսուսերն մերկ ’ի ձեռին նորա, ոչ իշխեաց ումեք ձայն տալ. կարծեաց թէ զկարասին կամի գողանալ: Իսկ Մահանայ յանկարծակի առեալ բարձ մի, աճապարեաց և նստեաց ’ի վերայ բերանոյ նորա, և հարաւ ’ի վերայ նորա. և մտեալ մեւս այլ ծառային Մահանայ կտրեաց զգլուխ նորա, և ժողովեալ զկարասին և զպատուական ակունսն և զընտիր սուսերսն, ել գնաց: Այլ խնդացեալ զօրացն Հայոց, մեծ գոհութի̃ այ̃ մատուցանէին. և ապաշաւեցին, զի զգերեզմանս իշխանացն աւերեցին:

Իսկ Մահանայ լցեալ իմաստութբ̃, առեալ երկերեւր կաշեայ ասպար, և արկ զհարեւր ջորեօք ամեհեօք, երկաթ մի յայս կոյս ասպարին, և երկաթ մի յայն. և գնաց մերձ ’ի բանակն Հոնին՝ որ փոխանակ էր Տիգրանայ, և ունէր ընդ ձեռամբ իւրով ութ հազար այր., և բանակեալ էր մերձ ’ի քարագլուխն՝ որ հայի հանդէպ Տարօնոյ լերինն[4]. և էր սա զատուակաց յայլոց բանակացն. արդ առեալ Մահանայ զհարեւր ամեհի ջորիսն, և տարաւ զնոսա յերբ բանակեն. և ’ի տասն ջորիսն այր մի՝ որ զհետ երթայր: Այլ իբրև խթեցին զջորիսն սրով և արկին ’ի բանակն, և ինքեանք զհետ մտեալ՝ զփող պատերազմին հնչեցուցին, և առ ձեռն սկսան կոտորել. և

1 Յերկս օրինակս Մոգրունս:

2 Յերկս օրինակս Սեբեմավայրք:

3 Յօրինակի միում գաղտուկք. յայլում գաղտանք. և ’ի միւս այլ գաղտուկ:

4 Յերկս օրինակս որ հանդէպ հայէր մերձն Տարօնոյ:

կանչեալ զարհուրեցան ժայռհեցան, և աղմկեցան յոյժ։ Վասնզի և Ջորիքն ընդ ձայն ասպարացն, և ընդ զօրացն աղմկել, և ընդ փողոցն բախելն խառնա-ցեալ, յամ կողմանց լռկ արշաւէին 'ի բանակն։ Այլ զօրքն կարծէին եթէ հեծեալ է, և ձայն սուսերացն 'ի կոտորելոցն է, իւրաքանչիւր որ լռկ վայ ձգէին, ոչ գիտելով զհետս անձանց. քանզի էր պատերազմէր ընդ նոսա։

Որդ. քանզի այլ զօրքն ոչ կարէին անցանել, զի էր մութն, և մեր զօրքն լռկ սատակելով նոցաէին, և զքարագլուխն ընաւ չկարացին յիշել, զի յիմարեցոյց զնոսա Տէր, ապա թողեալ զկարասին՝ դէմ փախուստ 'ի քարագլուխն արարին. և սկսան 'ի վայր հոսել ահաւոր վիմացն ընդ բարձրաւն։ Այլ ոչ որ կարաց գիտել զիրսն, մինչև պակասեցաւ ձիչ աղաղակին, և ապա գիտացին զօրքն Հայոց՝ թէ ընկղմեցան պարսիկքն. դարձան խնքեանք 'ի բանակետղ, և զկարասին և զզանձն ժողովեցին և զերիվարսն և զուղտսն, և արձակեցին 'ի գաւառն Պալունեաց։ Այլ ընդ ձի և ընդ Ջորի և ընդ ուղտ և ընդ էշ՝ գտաւ ութ և տասն հազար, որ ծածկէր զերեսս գաւառին։ Որդ. իբրև առաւօտ եղև, սկսան խնդիր առնել Տիգրանայ և որդւոյ նորա. և ոչ գտին։ Ապա զհետ փախստէիցն մտեալ խնդրէին, և հայեցեալ տեսին զնոսա գահավիժեալս։ Ապա մեծապանեալ արարին իւրեանց իշխան զՄհրխոսրով. և բարեկութեամբ ցնծեալ, ռազմ կարգեցին։

Իսկ Սմբատ զՎահան կողմնապահ էր թողեալ 'ի գիշերին չորեքհազարաւ. և երկու հազար 'ի գաղտնի կացուցեալ ընդ երկուս դէհս։ Այլ նոքն զայլ զօրսն ռազմ կարգեաց, և եա զաջ թևն Սարգսեայ իշխանին Պալունեաց. զի այնչափ հզօր էր, որ մարդոյն քան զմինն այլ ոչ կրկնէր։ Այլ զահեակ թևն տայր իշխանին Հաշտենից, և ինքն թողու իւր թիկնապահ զՎարազայ [1] որդին զՎահան։

Այլ զումարեցան ընդդէմ միմեանց, և եկին առ մի-մեանս Մհրխոսրով և Սմբատ, և սկսան հարկանել

1 Յերիս օրինակս զՎարազակայ որդին։

զգլուխս երերաց ։ Եւ դիմեաց զօրն Պարսից 'ի վերայ Սմբատայ իբրև զմեղու, և սկսաւ պակասել Սմբատ, քանզի այր ծերացեալ էր ։ Ձայն բարձեալ, ասէր ։ Ո՞ւր ես Վահան որդեակ, հասիր ։ Եւ նորա ձայն արկեալ 'ի սբ Կարապետն, ասէր ։ Ո՞հա ժամ, ով Մկրտիչ ։ Ո՞ւր ես Կարապետ Յովհաննէս ։ ո՞ւր են իմ սուրբ կրօնաւորացն աղօթքն ։ Եւ մտեալ յաւազին, ցրուեաց զժողովեալսն 'ի վերայ հօրն իւրոյ ։ և Սմբատայ ոգի առեալ, ածեալ զսուրն և եհար զաւանն, և Թիկնախաղն 'ի վայր ընկէց զգլուխ աւագի նոցա ։ և սուր 'ի վերայ եդեալ փախստականն արարին, մինչև 'ի գաւառնն ։ Իսկ դառնականքն յարուցեալ, 'ի մէջ առին զնոսա ։ և բազմաց կոտորեալ եղև այն օրն ։ և չորեք հազար գլուխ համարով ընկեցին ընդ քարն, որ կոչեցաւ Գլխընկէց ։ Եւ ժամանեաց նոցա երեկոյ, և զօրքն Պարսից փախստական եղեալ՝ իջին 'ի Գաշտեանս ութ հազար այր ։ և անդ հանդէս արարեալ զօրացն, և կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ Գանդխուեանք ։ և խաբանօք կամէին գնալ յԱսպահունիս ։

Իսկ Սմբատայ իմացեալ եթէ գնացին, յարուցեալ մտին զհետ նոցա, և 'ի վաղիւն հասին ։ Եւ իբրև բանակեցան առ իրերօք, խորհեցան սոքա գնալ 'ի վերայ Պարսիցն, և կազմեցան առ երիկունն ։ Եւ զեռ սոքա յայս էին, եկին հասին զօրք յԱսպահունեաց իբր երեք հազար ։ և տեսին զօրքն Հայոց՝ զի խառնեցան 'ի պարսիկս զօրքն Ասպահունեաց, լքան և յերկիւղ կործանեցան ։ և հնարս իմացեալ, ընդ Մարկուց[1] փողն 'ի վայր գնացին յեզր Արածանոյ, և անդ բանակեցան ։ Իսկ պարսիկքն յարուցեալ ընդ հետ մտին նոցա, և առեալ զետոյն՝ նեղէին զնոսա ։ Իսկ Սմբատայ զճամ գլոյսն իւր յանձ արարեալ, ասէ ։ Ո՛վ Տէր, զխնամ զմարդասիրութիւն քո առ մեզ զվաղընջուց ։ և այժմ տես զմեզ, զի աստի թշնամիքն, և անտի գետն ։ և արդ հայեաց 'ի մեզ, եթէ զիարդ թշնամիք նեղեն զմեզ ։ Եւ կնքեալ զանձինս իւրեանց, դիմեցին 'ի վերայ Պարսիցն ։ Եւ երևե-

1 Յերկուս օրինակս ընդ Մուշոյ փող ։

ցաւ նոցա 'ի պատերազմին այր մի ահեղ և լուսաւոր, և հեր նորա լոյս փայլատակէր: Զոր տեսեալ Մահանայ քաջին, և գիտացեալ՝ թէ Մարապետն է, խընդացեալ յարձակեցաւ 'ի վերայ նոցա. և կոտորեալ զզօրսն երեքհազար, և եդեալ առաջի և տարաւ անցոյց ընդ Տարօնս, և պատեալ իջոյց զնոսա մինչև հանդէպ եկեղեցւոյն, որք կամէին նշանել 'ի նոյն տեղին, և զկրօնաւորսն սպանանել: Իսկ զօրութիւն ծին արգել զնոսա, և ոչ կարէին անցանել ընդ ձորն, յետս զգետնի գլխելով. զոր սովորեցան Յետսանկ¹ կոչել տեղոյն:

Իսկ զօրքն եկեալ հասին յանտառն, որ հանդէպ վանացն հայի. և անդ թագեան: Իսկ Մահանայ անձապարեալ գնաց անդ, և սուր 'ի վերայ եդեալ՝ կոտորէր զնոսա. և ոչ մնաց յիշատակ անդամ, և կոչեցաւ տեղին այն՝ Մահու առիթ: Այլ խիստ վաստակեցաւ Սմբատ յաւուրն յայնմիկ. բայց 'ի թիկունս եհաս նմա Մարազ իշխանն Պալունեաց, և առաջի եդեալ զզօրսն գետամէջ առնէին, մինչև եկին 'ի տեղին՝ զոր այժմ Կուրայ² կոչեն: Այլ որք 'ի փախուստն երթային, կացին երիվարքն նոցա. և Պալունեաց իշխանն բազում զօրօք զհետ մտեալ, կոտորէին: Այլ իբրև անդ եկին, ասէ Մարազ ցպարսիկսն. Զի սպանեցաք, փախիք՝ որ մեք կոտորեմք: Այլ նոքա ասեն. Կորեաք մեք և մեռաք: Այլ կոչեցաւ անուն տեղւոյն Կուրայ. և 'ի նոյն տեղւոջն սկըսաւ մի մի ունել զնոսա, և զթլփատսն կոտորեաց. և էին համարով հազար վեցհարիւր և ութսուն: Իսկ այլք մնացեալք 'ի գետն խեղդեցան արք երկու հազար:

Իսկ զոր Սմբատ կոտորեաց, գունդն այն անցեալ յայնկոյս ընդ Ջովեանս 'ի վերայ փախստականացն ընդ լեառն, իսկ արք ամրոցին ելեալ զկնի՝ նետիւք և պարսաքարամբք և գլօք կոտորեցին արս երկու հազար և ութհարիւր: Այլ որք ապրեցան՝ էին արք հազար և քառասուն. որք փախուցեալք գնացին 'ի պար-

1 'Ի միում օրինակի Ցեփանգ. յայլում Այծսան. և 'ի միւսում Այծփան:

2 Յերկուս օրինակս Կուրան:

սիկս առ Խոսրով։ Եւ նա այլ զօրս առաքեաց 'ի Տարօն։

'Ի սոյն ամի վախճանեցաւ Ամբատ, և եա տանել զինքն 'ի տապանատուն հարցն իւրոց 'ի վանսն Գլակայ. և կայ 'ի դուռն սրբոյն Անտոնինոսի, զոր շինեաց Անտոնինոսն այն՝ որոյ մայրն հերձաւ, և եդ 'ի նշխարաց սրբոյն Անտոնինոսի անյայտս զձախ բոյթ ոտին սրբոյ նախավկային։ Եւ 'ի նոյն ամի փոխմամբն Ամբատայ՝ փոխեցաւ հայրն Եպիփան առ Ած յետ քսան ամի. և նստաւ յաթոռ նորա Պաւլիթ ամս երիս, որ է քսանևերրորդ 'ի սրբոյն Գրիգորէ։ 'Ի սոյն աւուրս կնքեցաւ Վահանայ որդին Տիրան 'ի վանսն Գլակայ 'ի Տր Կարապետն, 'ի հայրապետութեան Պաւլթի։

## ՊԱՏՃԷՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

Վասն գալոյն Վարդուհրոյ, և մեռանելոյն 'ի փախչելն.[1] յիսուն հազար տարանք յեզր Արածանոյ։

ԵՒ ԵՂԵՒ յետ ութուտասան ամին, դարձեալ զժտութն[2] եղև ընդ պարսիկս և ընդ Վահան. և առաքեաց Խոսրով զօրս 'ի վերայ Տարօնոյ, հինգ բեւր և վեցհարեւր։ Որք բազում սրտմտութեամբ եկեալ հասանէին 'ի Տարօն, և կամէին անցանել 'ի վանսն Գլակայ, զի հանցեն զոսկերս թշնամեացն. և եկեալ բանակեցաւ 'ի Մուշ։ Իսկ Վահան կոչեաց զորդին իւր զՏիրան քաջ, և ասէ. Որդեակ, մի վասն զի 'ի մեծութեան ես՝ պատրիս 'ի մեղաց, և մի վասն զի մանկիկ ես՝ խաբիր 'ի գեղ կանանց. այլ յիշեա զքո հարսն, որքան սրբութբ և ամբծութբ ծառայեցին Այ։ Մի մոռանար զծառայութն սրբոյ Կա

1 Ցերկուս օրինակս փախչելոյ. 2 Ցերկուս օրինակս դժբախտն։ և 'ի միւս այլ փախչիլ։

բարեկամին, զի 'ի պատերազմունս նա էր՝ որ օգնէր մեզ. այլ եթէ շատակեաց կամիս լինել, 'ի պղծութէ մի պատրիր, որպէս և չես իսկ: Այլ եթէ ես մեռանիմ 'ի պատերազմին, զիս 'ի մեր վանսն տուր տանել: Այլ դու ծառայեա այ և կրօնաւորացն նորա սըրբութբ, որպէս և ես ծառայեցի. զի ոչ պատրեցայ 'ի դեղոյ, և ոչ զրկեցի, և ոչ նեղեցի զտառապեալս. քանզի զամենեսեան՝ որք ընդ իմով իշխանութբ էին, զայրս և զկանայս և զմանկունս, զհաւատացեալս 'ի Քս, իբրև զեղբարս և զորդիս տան իմոյ հոգայի խնամով որպէս հայրքն իմ: Արդ եակ, զնոյն և դու արասցես, և Տր զօրացուսցէ զքեզ: Արդ գնա՛ք 'ի պատերազմ:

Այլ գնացին 'ի պատերազմ. և արձակեցին առ հայրն Գրիգոր, որ քսանևհինգերորդն էր, և նստաւ յաթոռ հայրապետութեան ամս ութ. և տարան 'ի պատերազմ երեքհարեւր ութսուն և հինգ կրօնաւոր կնկղով: Իբրև խմբեցաւ պատերազմն յեզերս Արածանոյ, առ անտառովն՝ որ կոչի Կաղամախեաց[1] բլուր, կրօնաւորքն սևազգեստք էին մազեղէնօք և կնկղաւորք, և ընդ տասն առնն ժամահար մի, և ընդ երկուսն խաչադրօշ բարձրաբուն[2], և ճակատեցան նոքա ընդդէմ իրերաց 'ի պատերազմ՝ յայնկոյս գետոյն որ 'ի դաշտին. զոր տեսեալ Թշնամիքն զարմանային: Այլ Վարդուհրի ոչ եմուտ 'ի պատերազմ. այլ տեսիչ, ասէ՝, թէ նոքա զի՞նչ գործեն: Այլ իբրև խմբեցաւ պատերազմ ընդ իրարս, և կամէին փախչել վահանեանքն, յայնժամ նոցա ծունր կրկնեալ՝ միաբան աղաղակեցին առ Այծ աղօթիւք և լի արտասուօք. Ո՛վ Տր, հար զմեր պատերազմն. ո՛վ Կարապետ, զարթիր 'ի ձայն պաշտօնէից: Այլ զայս ասացեալ միաբան՝ յոտն կացին, և զնշան խաչին դարձուցանէին 'ի վերայ Թշնամեացն. և հարին զժամահարսն յանդուգն:

Այլ հայեցեալ Վահանայ 'ի գունդ կրօնաւորացն,

1 Յերկուս օրինակս Կախմխեաց. իսկ յերիսն Կաղամանեաց:

2 Յերիս օրինակս և 'ի փառն կէս

Նաւարն ժամահար մի, նոյնպէս և յաւուն խաղ մի նշանակեա:

եւտեօ յաջ թեւս նոցա երիտասարդ մի՝ ահագին տեսլեամբ, և թագ ծիրանի 'ի գլուխ նորա և խաչ. և 'ի հանդերձից նորա հուր փայլատակեալ: Իսկ այլ երկուս երիտասարդականն հասակաւ տեսանէր, որք առաջի կային թեւաւորք. Զոր և թշնամեացն տեսեալ՝ յիմարեցան, և 'ի գետ անդր լցան. և որք 'ի գետոյն յայն կոյս անցին, Մեղտայ ուշ արարին: Իսկ Վահան ձայն տուեալ յորդին իւր Տիրան և յայլ զօրսն, և ասէ. Ահա Տէրն արարածոց Վրէժ երեւի 'ի մէջ ծառայից իւրոց. զի նա է թագաւոր նոցա և մեր ամենեցուն, որ խոնարհեցաւ 'ի ձայն պաշտօնէից իւրոց, և էջ 'ի փրկել զնոսա և զմեզ. արդ սնդեսցուք զկնի թշնամեացն: Իսկ անօրինացն հասեալ 'ի Մեղտի, և գտին երկոտասան ծեր 'ի կրօնաւորացն, և սպանին զնոսա. որք թաղեալք կան 'ի դուռն եկեղեցւոյն, զի այն իսկ էր խնդրուածք նոցա:

Իսկ Վահան մտեալ 'ի գետն, կապեաց զերիվարն 'ի վերայ ողկնն հանդերձ զինաւն, և անց յայն կոյս 'ի գետըն՝ զոր Պարսից դէմն [1] կոչեն: Եւ անդ ժողովեցան ամ̃ զօրքն Վահանայ. և կրօնաւորքն 'ի նոյն աւուրն աղօթէին մինչև էհաս առ նոսա հայրն, որ ունէր զգլուխն Վարդուհրայ աւագի նոցա: Իսկ Վահանայ վարեալ զզօրսն, և հասեալ 'ի դաշտն՝ որ 'ի վերայ Մատրավանիցն, և բոլորեալ զամալ կանգնեցին: Եւ եկեալ առ միմեանս Վարդուհրի, և Տիրան՝ որդին Վահանայ, ասէ Վարդուհրի. Կախարդասարք, դուք 'ի կախարդանն էք պանծացեալ, և կախարդութեամբ կամիք յաղթել Պարսից քաջաց: Ասէ Տիրան. Եթէ կախարդք եմք, դու վայր մի անսա՝ զի ես զքո ձիոյ ագիդ քեզ տեսանել տամ: Եւ ամբապարեալ 'ի բաց ձգեաց զաջոյ ոտնն սանդապանօքն հանդերձ. և նորա հակեալ յայնկոյս անկաւ: Ասէ Տիրան. Վարդուհրի, մի մեղադրեր. գլուխդ հակեաց և ընկեց զքեզ. արդ ուղղեմ զգետնոդ: Եւ ապա բառնայ. և կտրեալ զգլուխն ետ ցծառայ մի, և ասէ. Պահեա զդա, որ իջանեմք 'ի Մատրավանս և

1 Յերիս օրինակս Պարսից կողմ:

զնդղի խաղաղանք առաջի 'որ Կարապետին. զի դա էր, որ նախատէր զպաշտօնեայս նորա:

Եւ 'ի մէջ առեալ զզօրսն Պարսից, և սկսան փանդ֊ ղանել[1]. զի իշխանն Պալունեաց կոտրեաց երկու իշ֊ խանս, և եհան զնոսա մինչև 'ի Հաշտեանս: Եւ իբ֊ րև եհաս 'ի տեղի մի դաշտաձև, պակեաւ իշխանն փախստականն մինչ գեռ զօրքն հեռի էին, և ոչ կա֊ րաց խուսել կամ կռուել, այլ այնպէս կայր: Եկն մի ոմն 'ի ծառայիցն. Ո՞վ պակեար, ո՞վ իշխան: Եւ նա ասէ. Պալակ իշխան տեսանեմ, և ոչ կարեմ գնալ: Բայց ոչ կարացին գիտել, թէ զի՞նչ էր բանն, և անդէն մեռաւ: Իսկ նորա կոտրեալ զգլուխն, և առեալ զերկու իշխանորդիսն՝ զօրս եկալ, և ետ պա֊ հել. և ինքն գնաց զհետ փախստէիցն: Եւ հասեալ մերձ իշխանին, ասէ Սարագ. Ընկեր պարսիկ կա֊ մաւ, ապա թէ ոչ՝ անկանիս ակամայ: Եւ նա փա֊ խեաւ. և Սարագ զհետ մտեալ, եհար զտէգն 'ի թիկունս նորա, և անցոյց ընդ ողն երիվարին, և ա֊ սէ. Այժմ անկանիս: Եւ կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ Ներքինանկնիս:

Եւ սակաւ մի գնացեալ՝ եհաս միւս այլ իշխանին, և ասէ. Ընկանիս կամաւ, իսկ եթէ ոչ՝ անկանիս ա֊ կամայ: Իսկ նա ընդդէմ դարձաւ, և կոտրեաց զգլ֊ լուխ երիվարին Սարագայ, և ընկեց: Իսկ նա 'ի վայր վազեալ, և եհար զջիլս երիվարին պարսկին, և ա֊ սէր. Ընկեր և դու: Եւ անուանեցաւ տեղին այն Սայրանկանիս: Իսկ այնք՝ որք 'ի Պուղկն էին մնա֊ ցեալք, առեալ զերկու իշխանորդիսն, և զգլուխ այնր իշխանին՝ որ պակեաւն, բերին առ Սարագ. և կոչեցաւ անուն տեղւոյն այնորիկ Պուղկ[2]: Եւ դար֊ ձաւ Սարագ առ Սմբատ որդին իւր, և իջին առ Սահան. և նա կոտորեալ էր զզաղունն, և վաստա֊ կեալ էր յոյժ: Եւ փախուցեալք ընդ երեսս դաշ֊ տին փախստեայք լինէին, և անուանեցաւ տեղին այն Փանդիկ[3]:

1 Յայլում օրինակի ժանդամ֊դէլ. իսկ յերիս օրինակս և պարբե֊ցին զզօրսն Պարսից և սկսան ցրուել 'ի միմեանց:

2 Յերկուս օրինակս Պուղկ. և 'ի միւս այլ Պողակ:

3 Յերիս օրինակս Փոյադին:

Իսկ կրօնաւորացն դարձեալ գային 'ի Կաղամախեաց բլրէն, եկեալ ելին 'ի բլուր մի, որ հայի ընդդաշտին Մատրավանից. տեսեալ առ նոսա դունդ մի պարսիկ փախստականս, և աղաչէին զկրօնաւորսն ապրել: Իսկ իբրև եկին այլ գունդք իշխանին Հաշտենից, ասեն. Ո՞ւր են պարսիկքն, որք գային զհետ փախստէիցն. և ոչ ետուն կրօնաւորքն զպարսիկսն 'ի ձեռս նոցա: Նա եկեալ իշխանին Հաշտենից, ասէ. Ո՞ւր եղեն պարսիկքն: Նա նոքա ասեն. Պարսիկ են ընդ Հայերոյդ: Նա կոչեցաւ անուամբ տեղոյն Հայկերտ[1]: Նա ապա դադարեաց պատերազմն. և զփախուցեալսն դարձուցին 'ի Մեղտի, և գտան համարով արս չորեքհարիւր և ութսուն. և տուեալ նոցա զանձս և երիվարս՝ արձակեցին 'ի պարսիկս, ծանել զլրուցատարս սքանչելեացն՝ որ հանդիպեցաւ 'ի կրօնաւորացն նոցա:

Վճար եղև պատերազմին Տարօնոյ 'ի ձեռն առաքինի իշխանացն, Մուշեղայ, Վահանայ, Սմբատայ, Վահանայ կամսարականի, և Տիրանայ: Որոց յիշատակն օրհնութեամբ եղիցի:

1 Յերկս օրինակս Հայքերդ:

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*Վասն գերելոյ զպատուական Ծիծառնեայ խաչին, թէ յումմէ գերեաւ, և կամ թէ որպէս եկն 'ի Ծիծառնիկ, և կամ յոր ժամանակի գոր-ծեցաւ ։*

Ընդ ժամանակս *Թագաւորութեան Հերակլեայ զօրացաւ Խոսրով Պարսից արքայն. և գնաց մինչև յԵրուսաղէմ. զքաղաքն աւերեաց, և զկտակարանս այրեաց, և զսուրբ խաչն գերեաց, և առեալ գնաց 'ի Պարսիկս, եդեալ 'ի պահեստի զՏր խաչն հանդերձ սպասուքն մինչև յեւթն և 'ի տասն ամի Թագաւորութեանն իւրում։ Իսկ զօրացաւ Հերակլ 'ի Թագաւորութեանն իւրում, գնաց 'ի Պարսիկս, և եսպան զԽոսրով, և դարձոյց զՏր խաչն՝ հանդերձ գերեօքն ։ Իսկ ընդ բազում օթեւանօք զանց առնէր, տուեալ մասունս բազումս Հայոց աշխարհին և մեծամեծ իշխանացն ։ Երբև գնաց յԱրեզնաւան, կտրեաց սպասաւորն մեծ մասն մի 'ի գիշերին, և կամէր փախչել ։ Իսկ մի ումն իմացեալ, ազդ արար Թագաւորին. և նորա առեալ զմասնն 'ի նմանէ, և կտրեաց զգլուխ նորա. և ելեալ զօրօքն գնաց 'ի Կեսարիա, և ետ զմասնն հայրապետին Կեսարու, որ կոչիւր Յովհան. և ինքն գնաց 'ի Թագաւորաքնակ քաղաքն Կոստանդինուպօլիս ։ Իսկ 'ի նոյն ամի գնաց Սահան կամսարական 'ի Կեսարիա, և ետ երեսուն և վեց հազար դահեկան հայրապետին Յովհաննու, և առեալ ըզխաչն եբեր 'ի վանս Պղակայ 'ի Տր Կարապետն, և եդ 'ի դարանն՝ որ 'ի վերայ սրբոյ սեղանոյն. և եկաց անդ ամս վեց ։*

*Իսկ իշխանն Ռշտունեաց կողմանն Գուրգ Շատախօս, որ կոչեաց զանուն գաւառին իւրում Շատախ վասն աւելի անուան իւրում, սա եկն 'ի դաշտն Տարօնոյ առ այր մի՝ որոյ անուն էր Ծիծառնիկ. որ շինեաց փոքր աւան, և եդ անուն նմա Ծիծառն ։ Աղաչեաց իշխանն զԾիծառնիկ՝ եթէ հնարեա և գողացիր զխաչն, զի եկեղեցւոյն քո ազգական է ։ Ըներ ըզ-*

խաչն և տուր ինձ, և առ յինէն վեց հազար դրամ։ Իսկ նա ասէ. Դրամն քեզ, զխաչն առնում, և գամ յերկիրն քո. և ընտրեմ ամուր տեղի, և շինեմ աւան. և զիմ անուանս դնեմ։ Եւ յանձն կալեալ իշխանին, գնաց 'ի տուն իւր. իսկ Ործաանիկն զկինն և զորդիսն և զազգատոհմն իւր յղեաց առ իշխանն Մրջուց, և ինքն եկեալ ծանոյց զիրսն եկեղեցպանին։ Եւ նորա յանձին կալեալ՝ իջոյց 'ի պահարանէն, և գնացեալ զհետ նորա յերկիրն իշխանին՝ ընտրեաց տեղի, և շինեաց եկեղեցի. և անդ եդին ընտէրունական նշանն, և անուանեաց զաւանն Ործաան։

Եւ ընդ այն ժամանակին Ներսէս Հայոց կաթուղիկոս, որ 'ի Տայոց էր ծննդեամբ, այն՝ որ զՎաղարշկերտոյ նոր Մծածինն շինեաց, եկն վասն սուրբ խաչին տեսութեան։ Իսկ Վահանայ առեալ զկաթուղիկոսն, եկն 'ի վանսն Գլակայ. և խնդրեաց զսուրբ խաչն։ Իսկ սպասաւորացն խնդիր արարեալ, ոչ գըտին։ Սուգ առին իշխանքն և կաթողիկոսն և եպիսկոպոսունքն, և եւթն օր Վահան ոչ եկեր և ոչ էարբ։ Եւ յայտնեալ նմա մինչ դեռ ննջէր 'ի դրունս եկեղեցւոյն յաւուր ուրբաթու, եւտես ինքն իշխանն Վահան, զի այր ոմն լուսաւոր ընդ նսեամս եկեղեցւոյն յայս կոյս ելեալ, ասէ ցնա. Ո իս կողոպտեցին, և զՄրջք շինեցին. արդ թոյլ տուր, զի երկիրն այն ամուր է, ոչ կարեն անտի գողանալ։ Իսկ նորա լի եղեալ խնդութեամբ, զարթեաւ. և ընթացեալ՝ աւետիս տայր կաթողիկոսին, եթէ խաչն 'ի յՄրջքն է։ Եւ խնդացեալ յոյժ՝ 'ի վաղիւն տօն ցնծութեան կատարեցին, և յարուցեալ գնացին 'ի տեղին. և կալեալ զկրօնաւորն՝ որ զխաչն էր գողացեալ՝ ետ ցկաթուղիկոսն, և հանեալ ետ զերկոսին աչս նորա՝ որ զի կողոպտեաց զՍբ Կարապետն։ Եւ կալեալ Վահանայ զՈրծաանիկ, էհատ զգլուխ նորա։ Եւ զիշխանն Մրջուց եդեալ յՈղկան մինչև էառ 'ի նմանէ հարիւր հազար դահեկան, և ապա շինեաց զեկեղեցին՝ որ 'ի վերայ բլերն Աշու՝ յանուն որդւոյ իւրոյ կրտսերի Ստեփաննոս, որ կայ 'ի նոյն դուռն Թաղեալ։ Իսկ զխաչն ետ Վահան 'ի ձեռն եպիսկոպո-

ամն Արջուց. և նա իսկ կացոյց քահանայս եւթն 'ի վերայ եկեղեցւոյն, զի յամ ամի մինն ունիցի. և վեց հազար դրամ կարգեցին նոցա տալ Հայոց 'ի Տարօնոյ:

Արդ զայս պատմութիւն գրեալ եդին յեկեղեցին Ինծառնեայ. և եղև այս 'ի թուականութեան Հայոց հարեւր և երեսուն, և Հռոմին չորեքհարեւր քսան և եւթն. զոր ստուգիւ գրեալ զեղեալ պատմութին, եդին 'ի Գլակայ վանսն 'ի Սբ Կարապետն, հրամանաւ Ներսիսի Հայոց կաթուղիկոսի՝ որ քսանեւմեներորդ էր 'ի սրբոյն Գրիգորէ, և յիշխանութեան Վահանայ Մամիկոնենից: Երեսուն և երկու իշխան նշանակեալ է 'ի Մուշեղայ Մամիկոնեան ցեղին. սա եկաց իշխան 'ի Տարօն ամս երեսուն, և մարզպան ամս տասն:

Վասն մահուան Տիրանայ՝ որդւոյ Վահանայ, և պատերազմին՝ որ յեզերս Աղի ծովուն:

Յետ այսքան պատմութեան զրուցատրութեանց, սուգ ժամանեաց խաղաղաքնակ երկրիս մերում: Զի Վահան յաւելեալ առ հարսն իւր, մեռանի. և կայ թաղեալ 'ի դուռն սրբոյ Կարապետին, կացեալ իշխան Տարօնոյ և Ապահունեաց ամս երեսուն: Բայց որդի նորա Տիրան հրամանաւ Վաշգենայ Վրաց իշխանին և հօր իւրոյ Վահանայ գնաց 'ի դուռն Խոսրովայ, յառաջ քան զգնալն Հերակլի 'ի պարսիկս. և եղեալ Խոսրովայ ընդ որդեգիրս, լեալ մարզպան Հայոց, առնու զօր բազում, և գայ 'ի վերայ Յունաց որպէս թէ 'ի պատերազմ: Բայց յղէ 'ի կայսրն, թէ մի ինչ երկնչիր յիմոյ գալըս. այլ տուր ինձ քաղաք մի, զի ժողովեալ զզօրս Հայոց, և մնացից քեզ 'ի թիկունս: Իսկ նա ուխտ սիրոյ դնէր 'ի միջի, ոչ միայն մարզպան Հայոց և Պարսից համարեալ՝ այլ և զիմձսլեկոս առնել բովանդակ Հռոմոց:

Զայսոսիկ լուեալ Վաշգենայ Վրաց իշխանին՝ առաքեաց առ Խոսրով, եթէ նենգեաց քեզ Տիրան,

և եղև ընդ Յոյնս. արդ առաքեա ութ հազար այրուձի ընդ Սանանդ, և ես տաց զնա 'ի ձեռս քո: Իսկ Թագաւորն կոչեաց զՎոջինկ զՍրայ իշխանորդին, և արար մարզպան. և զՍիւնեաց իշխանն ձեռացկոծ այր հանել որպէս զնենգաւոր և զխաբօղ ազգ: Եւ առաքեաց նոքն առ Սաշտեան զօր հինգ հազար. իսկ Սաշտեան գրեալ թուղթ առ Տիրան այսպէս. Նեղացար պանդխտութ՟ք, արդ արի եկ՝ զի խորհեսցուք ինչ վասն արքայի:

Իբրև ընթերցաւ զթուղթն, 'ի նոյն աւուր եկն թուղթ մի 'ի Համամայ քեռորդւոյն Սաշղենայ, ծանուցանել զնենգութիւնն՝ որ ինչ առաջի կայր 'ի զօրացն եկելոցն 'ի Պարսից: Եւ նորա վաղվաղակի թուղթ գրեալ 'ի Սաշղեան, յանօթ առնելով վասն ծածուկ խրացն: Եւ բարկացեալ Սաշղեան, ետ ածել զՀամամ, և ծայրատել զոտս և զձեռս նորա: Եւ առեալ զպարսիկս՝ էանց ընդ գետն Ճորոխ, և գնաց 'ի քաղաքն Համամայ՝ որ կոչի Տամբուր. էհար սրով և հրով, և գերեաց զքաղաքն: Իսկ ոք եպիսկոպոսն քաղաքին Սանկնոս անիծեաց սաստիկ զիշխանն. և նորա հրամանն տուեալ պարսկացն՝ կոտորել զքահանայսն յեկեղեցին, որ կոչի ոք Սիոն: Իսկ եպիսկոպոսն աղօթեալ առ ա՟ծ լռութ՟ք, միայն զայս հանեալ 'ի լոյս՝ թէ եղիցի քաղաքս խոպան և աւերակ, և ոչ ոք իցէ որ բնակիցի 'ի սա յաւիտեանս յաւիտենից: Եւ արկեալ զինքն 'ի վերայ սեղանոյն, զենին զնա յաւուր Պենտակոստէին յառաջ քան զՔրիստոս պատարագելն: Եւ 'ի միւսում աւուրն ձայթեալ ամպոց երկնից, հրայրեաց արար զնա մինչ նըւտէր առ դուռն քաղաքին Տամբուրայ: Զայս յետոյ շինեաց Համամ, զիւր անունն դնելով Համամաշէն: Եւ 'ի գլուխ ել աղօթք Սանգնոսի. զի երեքհազար այր 'ի միում գիշերի սատակեցան, և այլքն փախեան, և քաղաքն աւեր մնաց:

Նա 'ի սոյն ամի ելանէ Հերակլ, և սպանանէ զԽոսրով. և յիշեաց զերդումն՝ զոր ընդ Տիրան և ընդ ինքն, և կացուցեալ մարզպան ա՟մ Հայոց, և ինքն գնաց 'ի Կոստանդինուպօլիս: Եւ յետ ութ ամի եկն Նբրահիմ քեռորդի Սահմեանի բազում

աղխիւ, ուԹեւտասն հազար առանձնոյ ընդ իւր բերեալ, խնդրէր հարկս 'ի Հայոց։ Իսկ Տիրան արձակեաց՝ ժողովել լինել համօրէն զօրու 'ի պատերազմ։ Զոր դիպող ժամանակ գտեալ իւր՝ որդւոյն Աշղենոյ Գոջիկ Սրաց իշխանին, ապստամբեցուցանէ ըզ-րավանդակ Հայք՝ չերԹալ առ նա։ Զայս տեսեալ Տիրանայ Թէ ամ ինչ 'ի վերջ հասեալ է, եդ զայս բանս առաջի զօրաց իւրոց ուԹ հազարաց՝ որք կամաւ էին եկեալ, Թէ ով Քրի ժողովուրդք, լաւ է ինձ մեռանել՝ քան զեկեղեցի այ հարկատու լինել Տաճկաց։

Նա 'ի վաղիւն ժողովեալ 'ի ստորոտն Գրգռոյ՝ որ ընդ հարաւոյ, 'ի դաշտ անդ խմբեցան յառաւօտէ մինչև յերրորդ ժամն։ Դեռ եւս փախստեայ էին արաբեալ զտաճկաստանն, իսկոյն իշխանն Մնձաւացեաց ապստամբեալ 'ի դուրս ելեալ, և սուր 'ի վերայ Հայոց զօրուն դնէ։ Իսկ Տիրան պատուեալ զերկու ռազմն; պատուհասեցաւ Սահուռայ,* և ասէ. Կաց ուրացեալ Սահուռ, զի ըմբռնեաց զքեզ Քրս 'ի ձեռս իմ։ Նա ձգեաց զգլուխն Սահուռայ սրով, և ինքն անդէն պատկեցաւ սրով երկու իշխանօքն։ Նա այս 'ի մէջ առեալ զզօրսն Հայոց, ամենեցուն զկատարած կենաց հատուցանէին։ Իսկ ոմանք փախստեայ լեալ, անցանէին հանդերձ մօրաԹաԹախ[1] Օձ քաղաքի։ Նա կոտորեալքն 'ի Պարսիցն կան 'ի պահեստի ընդ վկայարանաւն, և վերակացի անուանն որ Ոսանակ։ Իսկ Իբրահիմ անցանէ ընդ Հարք և 'ի Ոստեան, 'ի Սիրք և 'ի Գախվախս և 'ի Սանանդ. և առեալ հարկս, դառնայ 'ի տաճկաստան։

Ի սոյն ամի քակի եկեղեցին, որ յԱշտից վանսն հիմնարկեալ 'ի սրբոյն Գրիգորէ. և Կարապետն յԻննակնեանսն, և Մարավանն 'ի Տարօն; և մեծ կաԹուղիկէն յԱստղաբերդ, և Ներսիսի հայրապետի կաԹուղիկէ եկեղեցին 'ի Դվինն յԱսկեղեաց գաւառն։ Նա մարգարանն կայ Թաղեալ 'ի դուռն կաԹուղիկէին 'ի Չինենկերտ Տարօնոյ 'ի Պորպ քաղաքի։

1 Յօրինակին ծօրաԹաԹախ։

# ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆՍ այս սկսեալ առ որով Գրիգորիւ Զենորայ ասորւոյ՝ վասն որ ինչ յիւրեանն տեղիսն գործեցաւ թողեալ գրով ՚ի նոյն եկեղեցին ։ Հաճոյ է թուեալ այլոց յետոյ զնոյն պահել զկարգ, միայն որ ինչ իշխանն տանս այս առնէր քաջութիւն իւրաքանչիւր հայր գրեալ զիւր ժամանակին անցս թողլր . և աճեալ, պատմութիւն Ասորւոց կոչի ։ Զի այն հարանց անուանքն, որք գրեալք կան մինչեւ ՚ի Թէոդիկ, ամենեքեան Ասորիք էին . և տունն այն ասորի գրով և պաշտամամբ է վարեալ մինչեւ ՚ի Թէոդիկ ։ Եւ նա փոխեաց զամենայն կարգս, և զԱսորաց ցեղսն բնաւ հալածական արար ՚ի վանացն ։

Բայց զոր ինչ ՚ի Տրդատայ մինչեւ ՚ի Խոսրով արքայ Պարսից լեալ է ՚ի տանս մամիկոնենից՝ ոչ գտի գրով ։ Ապա տեղեկացայ յոմանց՝ թէ ՚ի կողմանս Ուռհայի է կրօնաւոր ոմն Մարմառա կոչեցեալ, և ունի զգիրսդ զայդ ։ Գնացի և խնդրի առ նմա զգիրսն, որ ՚ի նոյն իննակնեան վանսն էր գրած . և նա ՚ի զօրաց ուստեք ունէր ՚ի Պարսից կամ յայլոց ուրուք, որ ապականեալ զերկիր, և գիրքն կարծեմ թէ անտի է անկեալ ՚ի նա ։ Եւ թարգմանեալ ՚ի նմանէ քսան և ութ պատճեան, և տասն՝ որ ՚ի գրի առ իս կայր, և բովանդակեալ արարի երեսուն և ութ պատճեան, ՚ի մի գիրս հաւաքելով թողի մանկանց եկեղեցւոյ ։

՚Ի ժամանակս թագաւորութեան Հերակլեայ, և ՚ի մահուն Խոսրովու, հրամանաւ Ներսիսի Հայոց կաթողիկոսի, և յիշխանութեան մամիկոնեան Մահանայ՝ զոր մայրենեօք կամսարական կոչեն, որ Երեսներորդ երկրորդ էր ՚ի Մուշեղայ՝ զոր Վաշակորով կոչեն, գրեալ և կազմեալ ՚ի վանսն Գլակայ ՚ի դուռն սրբոյ Կարապետին, յորում կայ նշխարք Կարապե-

տին՝ ընեռումն յայտնի գոլ, Թողի անմոռաց յիշատակ ինձ և իմոցն ես Յովհան մամիկոնեան եպիսկոպոս, երեսներորդ հինգերորդ 'ի Զենոբայ առաջին եպիսկոպոսէն մամիկոնենից, 'ի հայրապետութեանն Սամուէլի՝ որ չորեքամսեան էր նստեալ:

Արդ որք զկնի դոցա այլք նստին վանականք, զոր ինչ գործի յաւուրս նոցա 'ի տանս յայսմիկ՝ դիցէ 'ի նոյն մատեանս. զի այսպէս գտաք օրինադրեալ յառաջնոցն:

Դարձեալ ես տէր Յովհաննէս մամիկոնեան եպիսկոպոս, աղաչեմ զմանկունս եկեղեցւոյ այ. զի յորժամ զշարադրութիւնս զայս ընդօրինակէք, մի ինչ թուեսցի ծաղր ումեք. այլ և զիմ պատճեանն անպակաս և լի գրով դրոշմեսջիք զհետ գրելեացդ, զի օրհնեալ լիջիք 'ի տր Կարապետէն, և 'ի մեր նուաստ հովուական աղօթից, և բովանդակ իսկ 'ի Քէ. և ած վարձահատոյց լիցի գրողացդ և ընթերցողացդ, ամէն:

## ՎԱԽՃԱՆ

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ



